ՀԱՅ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԱՅՆԹԱՊԻ ՈՐԲԱՆՈՑ

ՃԻՒՆԻԷ - ԼԻԲԱՆԱՆ

# ԱԿՆԱՐԿ ՄԸ

## ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐՈՒՆ

ԵՒ

## ՔԱՌԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

(1919 ՕԳՈՍՏՈՍԷ 1923 ՅՈՒՆԻՍ)



ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ա. ԳԱՍԱՊԵԱՆ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

1923

ՀԱՅ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԱՅՆԹԱՊԻ ՈՐԲԱՆՈՑ

ՃԻՒՆԻԷ - ԼԻԲԱՆԱՆ

# ԱԿՆԱՐԿ ՄԸ

## ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐՈՒՆ

ԵՒ

## ՔԱՌԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

(1919 ՕԳՈՍՏՈՍԷ 1923 ՅՈՒՆԻՍ)



ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ա. ԳԱՍԱՊԵԱՆ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

1923

# ԱԿՆԱՐԿ ՄԸ

## ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐՈՒՆ ԵՒ ՔԱՌԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

**1919 Օգոստոսէ 1923 Յունիս**

### ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ

*Որբախնամ Ընկերութեան Այնթապի Որբանոցին բացումը կ'երթայ կը կապուի այն թուականներուն՝ երբ, ընդհ. պատերազմի վախճանին, որբանոցները և պատսպարաններու հիմնումը անհրաժեշտ պահանջ մը դարձած էր վերապրող հայութեան համար։ Սուրիոյ մէջ, Դամասկոս, Հոմս, Համա, Հալէպ և ուրիշ շատ կեդրոններ, անգլիական բանակին գրաւման հետ կամ անկէ առաջ ունեցած էին իրենց այդ տեսակ մեծ ու փոքր կայանները։ Անապատներէ, մօտիկ կամ հեռաւոր աքսորավայրերէ խումբ խումբ դարձող որբեր և այրիներ, հոգածու և պաշտպան ձեռքերու կը կարօտէին և Ազգային Որբախնամ Մարմիններ, Ազգային Միութիւններ, հայ կամ օտար օժանդակութիւններով կը ջանային գոհացնել այդ պահանջը։*

*Քիլիս, Այնթապ, Մարաշ, իրենց գրաւուած օրէն ասդին, Կիլիկիոյ միւս մասերուն պէս, դարձած էին գլխաւոր հաւաքավայրերը՝ Սուրիոյ մէջ ցանցնուած հայութեան։ Կիլիկիան ունենալու յոյսը, աւա՜ղ, այդ միամիտ յոյսը, ի՜նչ շատ և ի՜նչ ոգեւորութիւն դրած էր ներգաղթի հոսանքին...։*

*Այնթապ, Կիլիկիոյ միւս շրջաններուն բաղդատմամբ, բացառիկ առաւելութիւններ ներկայացնող վայր մըն էր. օդին մաքրութիւնը, ջուրին առատութիւնը, բերրի բուսականութիւնը, բնակութեան, ճարտարարուեստի դիւրութիւնները և կրթական ծանօթ գերակայութիւնը պատճառ կ'ըլլային որ տասնեակ հազարաւոր հայեր, տեղացի թէ գաղթական, գային կեդրոնանային հոն։ 1919ի աշնան,*

*քան հազարի մօտ հայութիւն մը կար արդէն քաղաքին մէջ և Պիրէճիկի, Տէր-Զօրի կողմերէն նորանոր խմբեր կը հասնէին ամէն օր։* Miss Frearson*ի Մարտինի որբանոցէն ետք,* ACRNE(*) *յաջորդաբար հիմնած էր իր մանչերու և աղջկանց որբանոցները, որոնց վրայ կուգար աւելնալ* Mr. Travis*ինն եւս, Հալէպէ փոխադրուած։*

*Որբանոցներու չատութիւնը, սակայն, պատճառ մը չէր որ նորերու կարիք չմնար։ Բօր-Սաիտի քէմբին Այնթապցի որբերը եկած և դուրս մնացած էին. ուրիշներ ալ կային որոնք կը հասնէին Անթուրայէ և Սուրիոյ, Տէր-Զօրի զանազան անկիւններէն, վերջամնաց գաղթական խմբերու հետ։*

## ՈՐԲԱԽՆԱՄԻ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ

*Այդ օրերուն էր, երբ, Եգիպտոսի Հայ Որբախնամ Ընկերութիւնը, որ զինադադարէն ետք կարճ ատենի մէջ ա՛յնքան գնահատելի գործունէութիւն մը ունեցած էր Անթուրայի, Պալատա-Պազուպայի, Ատանայի որբանոցներուն և Սուրիոյ ընդհանուր կարօտելոց օգնութեան և հոգածութեան գործերուն մէջ, իր երկու պատուիրակներուն, փաստաբան Տ. Յակոբ Աղազարմի և Տ. Հ. Աղատեանի առաքելութեամբ կը ձգտէր իրականացնել Այնթապի մէջ հիմնելի Ազգային Որբանոցի մը ծրագիրը՝ Լոնտոնի Հայոց Միացեալ Ընկերութեան օժանդակութիւնը և Բրիտ. Զինուորական Իշխանութեան խոստացուած աջակցութիւնը քաջալե՛ր կը հանդիսանային Որբախնամին, որպէս զի փութով հետապնդէր իր այդ ծափահարելի ձեռնարկը։*

## ՏՆՕՐԷՆԻ ՀՐԱՒԻՐՈՒՄԸ

*Տիար Աղազարմ Պէյրութի և Հալէպի Անգլ. Զինուորական Իշխանութեանց հետ տեսնուելէ և անոնց ալ աջակցութիւնը ապահովելէ ետք, հիմնելի որբանոցը կռուանի մը կապելու առաջադրութեամբ, գործնական քայլեր կ՚սկսի առնել Հալէպի մէջ։ Որբանոցին Տնօրէնութեան պաշտօնը կ՚առաջարկուի Տիար Ղազարոս Ղլլիկեանի, փորձառու կրթական վաստակաւոր մը և նախկին Տնօրէն՝ Այնթապի Ազ՚նական երկրորդական վարժարանին, որ* 1919 *Մարտէն ի վեր կը գտնուէր Համա, իբրև Տնօրէն՝ Բրիտանական Իշխանութեան պաշտպանութեան տակ ծնունդ առած որբանոց-այրիանոցի։*

---

(*) Այժմու Near East Reliefը (Ամերիկեան Նպաստամատոյց)։

Տիար Ազգարմ և Տիար Դըլլիկեան ուղղակի բանակցութենէ մը և փոխադարձ լուսաբանումներէ ետք, վարչային, կազմական, մատակարարական և ներքին զանազան կէտերու շուրջ համաձայնութիւն մը կը կայացնեն Հալէպի մէջ, ի ներկայութեան Տեարք Մ. Սերոբեանի (այն ատեն արքեպ.), Օ. Մազլումեանի և Գ. Ճիլջերճեանի։ Որբանոցը պիտի բացուէր Այնթապի մէջ. պիտի պատկանէր Հ. Որբախնամ Ընկերութեան և բրիտանական կամ արտաքին օժանդակութիւններէ անկախաբար, մասնաւոր աջակցութիւն մը պիտի ապահովուէր տեղւոյն հայութենէն։ Բրիտանական Իշխանութիւնը պիտի հայթայթէր որբանոցին հացը՝ Տիար Ազգարմի եղած հաշուառումի մը համաձայն (*)։ Որբանոցը պիտի ունենար 500 որբ, երկսեռ, նախընտրութիւնը տալով 5է 14 տարեկան բացարձակ (անհայր-անմայր) որբերու։ Որբերը, ընդունուելէ առաջ, պիտի ենթարկուէին բժշկական լուրջ քննութեան և վերջապէս, ամէն ջանք պիտի ի գործ դրուէր որպէս զի հիմնելի որբանոցը պարզ ապաստանարան մը ըլլալէ աւելի դառնար ուսումնարան մը։

## ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆ

Տիար Ազգարմ 1919 Օգոստոսին կը մեկնի Այնթապ, տեղւոյն պայմանները ուսումնասիրելու և անհրաժեշտ նախապատրաստութիւնները լրացնելու համար։

Այնթապի մէջ Տիար Ազգարմ իրեն խորհրդակից-աջակից կ'ունենայ իր հրաւէրով կազմուած Խնամակալ Մարմին մը, որ ապա պիտի ստանձնէր որբանոցի վարչային հոգը, Տնօրէնութեան հետ գործակցաբար։ Խնամակալ-Վարիչ Մարմնոյն անդամներն էին.

| | |
|---|---|
| Արժ. Տ. Ներսէս Քհյ. Թաւուգճեան (Առաջնորդական Փոխանորդ Այնթապի) | Նախագահ |
| Տիար Տոքթ. Գէորգ Ասլանեան | Ատենապետ |
| » Արմենակ Ճէպէճեան | Ատենադպիր |
| » Սարգիս Կ. Նազարեան | Գանձապետ |
| » Եւսէփ Պարսամեան | |
| » Յակոբ Գարամանուկեան (**) | |
| » Յակոբ Համալեան | |

(*) Բանի մը օր շարունակելէ ետք՝ դադրեցուած, որով, հացի մատակարարումն ալ, սկիզբէն ի վեր ծանրացած է Որբախնամի վրայ։

(**) Անձնական գործերուն բերումով չէ կրցած մասնակցիլ Վարիչ Մարմնի աշխատութեանց։

*Տիար Ալազարմ անձամբ ներկայ կ'ըլլայ Խնամակալ Մարմնի առաջին նիստերուն. քանի մը օրուան մէջ կ'արձանագրուին երկու հարիւրէ աւելի որբեր. կը վարձուի Ազգային պանդոկը՝ անկողնի, զգեստեղէնի չինութեանց և այլ նախապատրաստական աշխատութիւններու համար։*

## ՏՆՕՐԷՆԻՆ ԱՅՆԹԱՊ ՄԵԿՆՈՒՄԸ

*Տիար Ալազարմ՝ Հալէպ դարձին՝ կը հրաւիրէ Տնօրէն Տիար Ղպլիկեանին որ, Համայի որբանոցին վերջին որբերն ալ — մեծ մասամբ արաբներու քովէն ազատուած անչափահաս տղաք և իսլամացուած աղջիկներ — Հալէպ փոխադրելէ վերջ ճամբայ ելլէ դէպի Այնթապ, ստանձնելու համար նորահաստատ որբանոցին անօրէնութիւնը։*

*Տնօրէն Ղպլիկեան, Համայի Բրիտ. իշխանութեան ներկայացուցիչ* Major Neve *ի բարեհաճ արտօնութեամբ, կը յաջողի իրեն հետ Այնթապ փոխադրել Համայի որբանոցին գոյքը (պղնձեղէն, խոհանոցի տարրկաններ, անկողնի կազմած ևայլն), ընդամէնը* 250 *եգիպտ. ոսկի արժողութեամբ։ Բացի ատկէ, Այնթապի որբանոցին կը յատկացուի Համայի Ազգ. Միութեան մօտ մնացած* 40 *օսմ. ոսկիի գումար մը ևս։*

*Տիար Ղպլիկեան Այնթապ կը հասնի Սեպտեմբերի սկիզբները. Վարիչ Մարմնի հետ խորհրդակցաբար նոր ձեռնարկներ կ'ըլլան փութացնելու համար որբանոցի պաշտօնական բացումը։ Կը վարձուի Պարսումեան շէնքը, եռայարկ տուն մը Գայաճըգի մէջ. հայկական թաղերու կեդրոնը. Տնօրէնութեան կողմէն կը հրաւիրուին մի քանի պաշտօնեաներ ևս(*) և աւելի ընդարձակ սահմանի մը մէջ առաջ կը տարուին պաշարի, զգեստեղէնի, անկողնի պատրաստութեան աշխատանքները։*

## ՈՐԲԱՆՈՑԻՆ ԲԱՑՈՒՄԸ

**25 Սեպտ. 1919**

*Արձանագրուող որբերէ առաջին խումբը,* 70 *հոգի,* 22 *Սեպտեմբերին քննութեան ենթարկուելով, անհայր ու անմայր,* 5*է* 14

---

(*) Պ. Դաւիթ Պարսամեան (մատակարար), Պ. Գրիգոր Պօղոսեան (քարտուղար, որ Համայի որբանոցին մէջ ալ նոյն պաշտօնով կը գտնուէր)։

*տարեկան 28 առողջ որբեր մաքրուելէ և նոր զգեստներով զգեստաւորուելէ ետք կ'ընդունուէին ներս։ Որբանոցը պաշտօնապէս կը բացուի 25 Սեպտեմբեր, հինգշաբթի օր և այնուհետև, ամէն օր նոր որբեր կ'ընդունուէին, ըլլա՛յ հին արձանագրուողներէ և ըլլա՛յ նոր դիմողներէ, միշտ ի նկատի ունենալով որբերու տարիքը, առողջութիւնը և անտիրականութիւնը։*

*Որբերու բժշկական քննութեան հոգը ստանձնած էր Վարիչ Մարմնի Ատենապետ Տօքթ. Գ. Ասլանեան, զոր ազգասիրաբար շարունակած է մինչև վերջ, ձրիօրէն(*)։ Որբանոցի համար նախապէս վարձուած շէնքը, Ազգ. պանդոկը, յատկացուած էր բորոտութեամբ կամ գոնջութեամբ կասկածելի որբերու ապաքինական դարմանումներուն։*

## ԿՐԹԱՐԱՆ

*Որբերուն թիւը, որ Սեպտեմբերի վերջը 45 եղած էր, օրէ օր բազմապատկուելով, Նոյեմբերին կը հասնի 117ի(**) (87 մանչ և 30 աղջիկ) — Քիլիսի կազմալուծեալ որբանոցէն ղրկուած որբերով։*

*Որբերուն կրթութիւնը՝ որբանոցին աւագ նպատակը ըլլալով, Հոկտեմբերի սկիզբները տեղի կ'ունենան ուսումնական կարգ մը կազմակերպութիւններ. որբերը կը բաժնուին 3 դասարանի(***).*

*ա) Գրել-կարդալ չգիտցողներ.*

*բ) Սկսնակներ.*

*գ) Նախնական ուսում մը առածներ։*

*Կը կազմուի Ուսուցչական Մարմին մը՝ չորս հոգիով(†), երկու ուսուցիչ և երկու ուսուցչուհի, որոնց հետ դասեր կ'ստանձնէ որբանոցի քարտուղար Պ. Գրիգոր Պօղարեան եւս։*

*Սկիզբի ամիսներուն դասաւանդութեան նիւթերն կ'ըլլան Հայ. լեզու, Հայ. Պատմութիւն, ուսողութիւն, իրաբանութիւն,*

---

(*) Որբանոցը Այնթապի մէջ թոշակաւոր բժիշկ չէ ունեցած. ատեն մը՝ Տքթ. Յ. Խալճեան եւ ետքերը՝ Տքթ. Մ. Հաճիեան օրական մէկ մէկ ժամ այցելած եւ ձրիօրէն ստանձնած են այդ պաշտօնը:

(**) Բսան տարբեր վայրերէ, բայց, բացարձակ մեծամասնութեամբ՝ Այնթապցի:

(***) Նոյեմբերի մէջ 5-ի վերածուած:

(†) Պարոններ Յարութիւն Մոմճեան, Ասուր Թէքիկեան եւ օրիորդներ, Մէրի Հեղինեան, Ազնիւ Տէմիրճեան:

գեղագրութիւն, որոնց վրայ կ'աւելցուի Ֆրանսերէն լեզուն ալ (Ֆրանսացիներու ժամանումէն ետք)։

## ՈՐԲԱՆՈՑԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԼԵԶՈՒՆ

*Ընդունուած որբերը, մեծամասնութեամբ Այնթապ-Քիլիսի շրջանակէն, հետեւաբար՝ Թրքախօս, առջի օրէն կը բռնադատուին հայերէն խօսելու։ Որբանոցին պաշտօնական լեզու կ'ընդունուի հայերէնը և գոհունակութեամբ կը դիտուի որ երկու ամիս չանցած, բառ մ'իսկ հայերէն չգիտցող որբեր ու որբուհիներ հայերէն կ'արտայայտուին ամենայն դիւրութեամբ։*

## ԱՐՀԵՍՏԱՆՈՑ

*Որբերու համար արհեստներու ուսուցման անհրաժեշտ պէտքը գնահատելով, Տնօրէն Ղըլըճեան՝ Վարիչ-Մարմնի հետ խորհրդակցաբար այդ ուղղութեամբ ալ ձեռնարկներ կ'ընէ և ծրագիր-պիւտճէ մը պատրաստելով կը մատուցուի կեդրոնի գնահատութեան։ Ամենայն հաւանականութեամբ,* 1920*ի սկիզբները այդ ձեռնարկն ալ պիտի ի գլուխ հանուէր. քանզի, ինչպէս կը յուսացուէր, Եգիպտոսի* Այնթապի Տարագրելոց Միութիւնն *էր որ պիտի ձեռք առնէր արհեստանոցի ծախուց մատակարարութեան հոգը։ Դժբախտաբար, քաղաքական պայմանները կուգան յեղաշրջել ծրագրուած ու ձեռնարկուած բոլոր աշխատանքները։*

## ՖՐԱՆՍԱՑԻՆԵՐՈՒ ԱՅՆԹԱՊ ԺԱՄԱՆՈՒՄԸ

*Անգլիական գրաւման բանակը Հոկտեմբերէն սկսեալ հետզհետէ կը քաշուէր Այնթապէն ու շրջակայքէն և ամսուն վերջերը, հասնող ֆրանսական ու հայ-կամաւորական գնդերը, հրամանատարութեամբ* Lt. Col. Flye Ste. Marie*ի, կը փոխանակէին մեկնողները։*

*Ֆրանսական ուժերու ժամանումը, սակայն, քաղաքական տեսակէտով բարերար հովեր չէ որ կը բերէր իրեն հետ։ Թուրք ազգայնական շարժումը, Մուսթաֆա Քէմալի և իր արբանեակներուն կազմակերպութիւնը, անգլիացիներու օրով սաղմնուած, իր գոյութիւնը կը սկսէր զգալի ընել ո՛չ միայն Անատոլուի, այլ և Այնթապի և շրջակայից մէջ։ Դաշնակից գրաւման ուժերու հոկտեմբերեան փոխանակումը հաշտ աչքով չդիտուեցաւ մինչև վերջ և Ֆրանսական ուժերու մուտքը՝ փոթորկոտ օրերու նախադուռը եղաւ։*

### ՏԱԳՆԱՊԻ ԱՄԻՍՆԵՐ (1919 Նոյեմբեր 1920 Մարտ)

Նոյեմբերի առերեւոյթ խաղաղութենէն ետք, ձմրան հետ կը սկսին ծայր տալ քաղաքական դժուարութիւնները։ Ճամբաներու վրայ կողոպուտներ, քաղքին մէջ թէ դուրսը ցոյցեր և աննպաստ արտայայտութիւններ սովորական դէպքեր կը դառնան։ Շատ չանցած անոնց վրայ կ'աւելնան անհետացումները, սպաննութիւնները ու պօյքօթը։ Մարաշի փետրուարեան ընդհարումն ու իր ողբերգական վախճանը կը խանդավառէ Այնթապի և շրջակայից իսլամ բնակչութիւնը և չէթէական խմբերը. ճամբաները կը փակուին և Ֆրանս. ուժերը, քաղքին հայութեան հետ կը մնան պաշարման տակ։

Տագնապի և ահուդողի մատնուած, մանաւանդ՝ Յունուար 31ի խուճապէն ետք, հայերը հետզհետէ կը կեդրոնանան հայկ. թաղերու մէջ, մէկ կողմէ ապաւինելով Ֆրանս. ուժերու պաշտպանութեան, միւս կողմէ ձեռնարկներ ընելով ինքնապաշտպանութեան և ներքին կազմակերպումի համար։

### ՈՐԲԱՆՈՑԻ ԱՌԱՋԻՆ ԿԻՍԱՄԵԱԿԸ
### (1919 Հոկտ. — 1920 Մարտ)

Որբանոցը, հակառակ քաղաքական այդ աննպաստ պայմաններուն, իր զբաղումները կը շարունակէր ըստ առաջնոյն։ Կրթական անդրանիկ կիսամեակի վախճանին, Մարտի մէջ, քննութիւններն ալ կը կատարուին։

Սակայն, ճամբաներու փակումը, հաղորդակցութեան դժուարութիւնները պատճառ եղած էին որ կեդրոնի առաքումները յապաղին. տնտեսական տագնապը զգալիօրէն կը ճնշէր որբանոցը և տեղային փոխառումներ, ավանսներ հազիւ կը բառնային զայն (*)։

Ֆրանսացիք հացի համար թէպէտև յանձնառութիւն մը ունեցած չէին սակայն, կարելի եղած էր Ֆրանսերէնի ուսուցումին համար ամսական 50 ոսկիի նպաստ մը ապահովել, ինչ որ կանոնաւորաբար վճարուած է Նոյեմբերէ Ապրիլ։

Որբերու թիւը 120ի հասած էր. բայց, յաւելումը և 500ի հասցումը — ինչ որ նախածրագրուած էր, նախապէս՝ չէնքի անբաւարարութեան և ապա՝ ծնունդ առնող պայմաններու անստու-

(*) Փոխառումներ՝ Հ. Բ. Ը. Մ.էն : Acrnet. ավանս՝ Ֆրանսական Իշխանութենէ եւայլն:

գութեան տակ, բնական է որ յետաձգուէր, կեդրոնն ալ, միեւնոյն նկատումներով, նոյնը կը հրահանգէր արդէն։

## ԱՅՆԹԱՊԻ ԴԷՊՔԸ

1920 Ապրիլ 1ին կը պայթի Այնթապի դէպքը, արդիւնք՝ ամիսներու լարուած դրութեան։ Մարտ 28ին Քիլիսէ մեկնած ֆրանսական պաշարաբարձ զօրասիւն մը, թնդանօթի ոյժով հազիւ կրցած էր կարել թիւրք պաշարման գիծը և երբ, Ապրիլ 1ին այդ զօրասիւնը կը դառնայ Քիլիս, կը հանդիպի նոյնքան զօրաւոր ընդդիմութեան մը՝ դարանակալ չէթէական խմբերու կողմէ։ Հրապարակէ մը տրուած հրացանի ազդանշանի մը վրայ, քաղքին մէջ ալ կ'սկսի ընդհանուր հալածանք մը. խուժաններ՝ զէնքով ու քարով կը հարուածեն նահանջող հայ բազմութիւնը. քանինե՜ր կ'իյնան անշունչ. ոմանք՝ վիրաւոր, արիւնլուայ, հազիւ կը ճողոպրին. ուրիշներ կը մնան գերի, խումբ մը ֆրանսացի զինուորներու հետ։ Թիւրք-ֆրանսական բախում մը ծնունդ առած էր, որուն առաջին զոհերը՝ հայեր կ'ըլլային. և հայերը բնական է որ պաշտպանողական դիրք մը առնէին անյապաղ, իրենց սպառնացող անխուսափելի աղէտին դիմաց. ինքնապաշտպանութեան համար եղած ներքին կազմակերպութիւնը(*) հրաշքներ կը գործէ այդ օր, պատնէշներու հիւսումով և հայ մարտական ոյժերու դիրքերու ետեւ հրաւիրումով։

## ՈՐԲԱՆՈՑՆԵՐԸ

Որբանոցներու հարցը բացառիկ կարեւորութիւն ընծայող հարցերէն մին էր։ Այնթապ այդ օրերուն 2500է աւելի որբ կը համախմբէր իր մէջ և բախումի անխուսափելի հաւանականութիւնը առիթ տուած էր որ կանուխէն կարգադրութիւններ ըլլային անոնց համար։ Թրքական շրջաններու մէջ գտնուող որբանոցներն ու այրիանոցը հետզհետէ կեդրոնացուած էին հայկական թաղերու մէջ և Acrne իր անմիջական պաշտպանութեան, ամերիկեան դրօշին հովանւոյն տակ առած էր զանոնք։ Որբախնամի Ազգային Որբանոցն ալ անհրաժեշտօրէն պիտի պատսպարուէր ամերիկացւոց. այդ պահանջը

(*) Գլխաւորութեամբ Պ. Պ. Ատուր Լեւոնեանի եւ Աւետիս Գալէմքեարեանի եւ մասնակցութեամբ բոլոր կուսակցութիւններու եւ տարագիր ու տեղացի հայութեան։

մ մէնէն աւելի շեշտուած էր Մարաշի դէպքէն ետք, երբ, ճամբաներն ալ փակուած՝ կեդրոնի առաքումներն ու հրահանգները կը յապաղէին և արտաքին օժանդակութեան մը կարիքը կար: Վարիչ Մարմինը իր 2 Մարտի նիստով Տնօրէն Դպլիկեանի լիազօրութիւն կուտար որպէս զի ACRNEի Վարիչ Տնօրէն Mr. J. H. Boydի հետ բանակցելով նպաստաւոր համաձայնութեամբ մը մեր որբերն ալ ենթարկէր ամերիկեան պաշտպանութեան:

## ՈՐԲԵՐԸ՝ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀՈՎԱՆԻԻ ՏԱԿ

Ապրիլ 1ին, բոլոր որբանոցներու հետ, Որբախնամի որբանոցն ալ ամերիկեան դրօշի տակ կ'անցնի: Որբերն ու որբուհիները կը փոխադրուին Ամերիկեան Հիւանդանոցի և Աղջկանց Գոլէճի շէնքերուն մէջ, ուր, ACRNE կը ստանձնէ բովանդակ որբերու սնուցման ու խնամածութեան հոգը:

## ԲԱԽՈՒՄԻ ՕՐԵՐԸ

Ապրիլի առաջին երկու շաբաթները անհաւասար բախումներու և խիզախ մարտնչումի մը շրջանը կ'ըլլայ հայ փոքրաթիւ խըմբերուն համար. Ֆրանսական ույժերը այդ օրերուն գործօն մասնակցութիւն մը չէին ունենար և հայ գունդը առանձինն կը ճակատէր Թրքական զօրային յարձակումներուն դէմ:

Ուտեստի պակասը, սակայն, առաջին օրէն կը ճնշէր պաշարուած ժողովուրդը. պարենաւորման կազմակերպութիւնը, նպաստահաւաքումներով, տեղային գնումներով հազիւ պիտի կրնար 15000ի մօտ հայութեան — մեծ մասամբ գաղթական և նպաստի կարօտ — մէկ ամսուան սնունդը ապահովել. վերջերը, Ֆրանսական convoiներով Հալէպէն ու Քիլիսէն բերուած ալիւրն ալ խիստ աննշան էր տիրող ծով կարիքին առջև:

Որբանոցները, բնականաբար, կը կրէին ուտեստեղէնի նոյն տագնապը. անոնց պատրաստ պաշարներն ալ, ծայրայեղ խնայողութեամբ մը սպառելով, ամենէն շատ մէկ ու կէս ամսուան պիտի բաւարար ըլլային(*) և եթէ պաշարման վիճակը աւելի երկար տևէր, սովը անխուսափելի վախճանն էր որ կը սպառնար:

---

(*) Որբանոցներու պաշարէն մաս մ'ալ տրամադրուած էր կռուող ույժերու. Ազգային Որբանոցի պլղուրը գրեթէ ամբողջութեամբ տրուած էր ազգին:

Որբերու և գաղթական այրիներու, սպառող դասակարգերու քաղքէն մեկնումը միակ փրկարար ելքն էր ուր կը յանգէին Ազգ. Միութիւնը, Ամերիկացիք և Ֆրանս. իշխանութիւնը։

## ԲԱԽՈՒՄԻ Բ. ՏՐՋԱՆԸ

Ապրիլ 17է սկսեալ բախումը իր երկրորդ շրջանը կը մտնէ. հայ ուժերը 16 օր շարունակ մաքառելէ, իրենց մօտիկ Թրքական թաղերը գրաւելէ և ճակատը հարթելէ ետք, ասպարէզը կը ձգեն Ֆրանսացիներու և Col. Normand իր զօրամասերով կը ձեռնարկէ ռազմական լուրջ գործողութեանց։ Թնդանօթներու գործածութիւնը, Թրքական ուժերու՝ Ֆրանս. բանակատեղիին շուրջ խտացումը, կռիւին կեդրոնը կը փոխադրեն քաղքին արեւմտակողմը, ուր կը գտնուէին որբերու երկու ապաստանարաններն ալ, Ամերիկեան Հիւանդանոցը և Անգլիանց Գոլէճը։ Թշնամի գնդակներ կը սկսին տան տան զոհեր խլել նոյն իսկ անմեղ որբերու շարքերէն։

## ՈՐԲԵՐՈՒ ՓՈԽԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԸ

Որբերու փոխադրութիւնը այդ պայմաններու տակ անյետաձգելի պահանջ մըն էր(*)։ ACRNEի Հալէպի Տնօրէնը Dr. Lambert, փոխադրութեան գործը յաջողցնելու և անձամբ վարելու համար Այնթապ կու գայ և Մայիսի երրորդ շաբթուն կը սկսին մեկնումի պատրաստութիւնները։

1920 Մայիս 25ի գիշերին կը մեկնի առաջին կարաւանը — ACRNEի որբերէն մաս մը, Որբախնամի որբերը և Miss Frearsonի որբուհիները, գաղթական և տեղացի 3000ի մօտ հայութեան մը հետ, հետի կամ բեռնակառքերով։ Ֆրանսական convoiյի զօրաբաժինը կ'ընկերանայ մեկնող խմբին։

## ԱՅՆԹԱՊԷ ՊԷՅՐՈՒԹ

Ամերիկացիներէ տրամադրուած և սեփական ծախքով վարձուած 12 մօտ կառքերով կը փոխադրուէին Որբախնամի որբերն ու պաշտօնէութենէն մաս մը։ Գոյքերէն ամենակարեւորները (անկողին,

---

(*) Շատ վերջերս, Պէյրութ փոխադրուելէ ետք, լսեցինք թէ Որբախնամը իր կողմէ ձեռնարկներ ըրած եւ պատուիրակուհի Տիկին Զ. Եսայեանի պաշտօն տուած էր որ Այնթապի որբանոցը ապահով վայր մը փոխադրելու համար աշխատի։

զգեստ, պղնձեղէն, խսիր, գիրք ևլն.) կարելի եղած էր մեծ մասին բեռցնել։

Երկու օրուան ճամբորդութենէ մը ետք կարաւանը կ'իջեւանի Քիլիս (եկեղեցին ու դպրոցը)․ որբերը, Մայիս 30ին Քիլիսէ մեկնելով Գաթմայէ չոգեկառք կը նստին և Հալէպի վրայով կը փոխադրուին Պէյրութ, Յունիս 1ին։

Ժամանող որբերը Ֆրանսական և ամերիկեան վրաններու տակ կը պատսպարուին քարանթինայի բակին մէջ, որ հետզհետէ կը դառնայ որբերու քէմբը։

## ՈՐԲԱՆՈՑԸ ՊԷՅՐՈՒԹԻ ՄԷՋ

ACRNE ինքն էր որ սահմանած էր որբերու կերակրումին հոգը, ո՛չ միայն փոխադրութեան օրերուն՝ այլ և Պէյրութ ժամանումէ ետք, քէմբի մէջ։

Վրանաբնակ այդ կեանքը մէկուկէս ամսու չափ կը տեւէ։ Կիզիչ տաքը, վրաններու պակասը և անոնց հետ՝ սնունդի անբաւականութիւնն ու կազմակերպութեան թերին հետզհետէ անհրաժեշտ կը դարձնեն որբանոցներու անջատումը։ Miss Frearson իր որբուհիները փոխադրած էր արդէն։ Տնօրէն Ղպլիկեանի տեղեկագրութեանց վրայ Որբախնամի Կեդրոնի Վարչութիւնն ալ, Յունիսի վերջերը կը հրահանգէ Պէյրութի մէջ կամ շրջակայքը գտնել յարմարագոյն վայր մը և իր որբերը հոն փոխադրելով վերջ տալ տիրող անստգութեան և թափառական կեանքին։

## ՆՈՐ ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆԸ

Տնօրէն Տիար Ղպլիկեան, Պէյրութի պայմաններուն անծանօթ, իր առաջին տեղեկագրովը իսկ կը շեշտէ տեղւոյն վրայ Նոր Վարիչ Մարմնի մը կազմութեան պէտքը։ Կեդրոնը, գնահատելով տնօրէնութեան առաջարկը, համամիտ կը գտնուի և այդպիսի Մարմին մը կազմելու իրաւասութեամբ՝ անհրաժեշտ հրահանգը կուտայ Պէյրութի Ազգ. Միութեան։

Ազգ. Միութիւնը, Տի՛կին Զապէլ Եսայեանի որով ծնունդ առած Եռանդամ Խնամակալ Մարմնին լրացումով, 5 Յուլիսին կը կազմէ Նոր Վարիչ Մարմինը, հետեւեալ անդամներով.

| | |
|---|---|
| *Գեր. Հայր Պօղոս Արիս*(*) | Ատենապետ |
| *Տիար Արշակ Գալուստեան* | |
| » *Ջաքուղօն Բիրանեան* | Ատենադպիր |
| » *Կիրակոս Աֆարեան* | Գանձապետ |

*որոնց վրայ պիտի աւելցուէր հինգերորդ մ՚ալ, Գեր. Հայր Յակոբ Հանթուչեան, այն պարագային երբ Որբանոցը պիտի փոխադրուէր Ճիւնիէ ։*

## ՈՐԲԱՆՈՑՆ Ի ՃԻՒՆԻԷ

*Որբանոցը Պէյրութ պահելու տեսակէտը ի սկզբան ամէնէն աւելի պաշտպանուող տեսակէտն էր. կեդրոնն ալ զայն հրահանգած էր երկիցս ։ Յունիսի վերջերն ու Յուլիսի առաջին շաբթուն Պէյրութի մէջ այդ ուղղութեամբ փնտռտուքներ կ՚ըլլան. սակայն, նպատակայարմար զատարկ շէնքերու չգոյութիւնը, վարձքերու արտակարգ սղութիւնը և քաղքին բարոյապէս որբերու անյարմար միջավայրը պատճառ կ՚ըլլան որ որբերը զետեղելու համար Պէյրութէ դուրս վայրեր փնտռուին ։* ACRNE *եւս իր որբերուն համար Լիբանանէն տեղեր սկսած էր ճարել արդէն ։*

*Որբերը Կիպրոս փոխադրելու տեսակէտը, որ պահ մը պաշտպանուեցաւ ոմանց կողմէ իր ուրոյն դժուարութիւններն ունենալուն՝ անգործնական նկատուեցաւ ։*

*Վերջապէս, Լիբանանը կը մնար իբրև յարմարագոյն վայր որբերու զետեղման համար ։ Տնօրէն Տիար Դըլլիկեան, ընկերակցութեամբ Տիար Ա. Գալուստեանի և Տիար Վ. Վարդապետեանի* (**) *և առաջնորդութեամբ Հայր Հանթուչեանի, կը շրջի Ճիւնիէն ու շրջակայքը, մինչև Ջմմար. այդ քննական պտոյտին արդիւնքը գոհացուցիչ կը նկատուի, տրուած ըլլալով որ*

1) *Բաւարար շէնքեր կը գտնուէին.*

2) *Վարձքերը անհամեմատօրէն աժան էին.*

3) *Օդով աւելի մաքուր և Պէյրութի մօտիկ ըլլալով (շոգեկառքով 1 ժամ) առողջական, մատակարարական տեսակէտներով եւս առաւելութիւններ կային ։*

---

(*) 1921ին Ապրիլի վերջերը Եւրոպա ուղեւորելուն, Վարիչ Մարմնոյն ցուցմունքով՝ Կեդրոնի կողմէ Տիար Աբրահամ Սարրաֆեան ընտրուած է Վարիչ Մարմնոյ անդամ — ատենապետ, Հայր Պօղոսի տեղ ։

(**) Նախկին Խնամակալ Մարմնի անդամներէն ։

*Ազգ. Միութիւնն ալ ամէն տեսակէտով Լիբանանը կը նախընտրէ եւ համամիտ կը գտնուի Վարիչ Մարմնոյ, որով, որբերու Ճիւնիէ փոխադրութիւնը որոշուած նկատուելով, քննական երկրորդ եւ վերջին շրջագայութեամբ մը շէնքի հարցն ալ կը կարգադրուի եւ մէկ տարուան համար կը վարձուի Ջուզի Գթութեան Քոյրերուն Սարպայի ծովահայեաց շէնքը։*

## ՈՐԲԵՐՈՒՆ ՃԻՒՆԻԷ ՓՈԽԱԴՐՈՒՄԸ

1920 *Յուլիս* 21 *եւ* 24*ին երկու անգամով որբերն ու որբուհիները,* 122 *հոգի, կը փոխադրուին Ճիւնիէ, Ֆրանս. Զինուորական իշխանութենէն ձրիաբար տրամադրուած վակոններով։ Որբերը կը զետեղուին նոր շէնքին մէջ եւ քանի մը օրերու աշխատանքէն ետք զայն կը դարձնեն մաքուր եւ բնակելի վայր մը, մանաւանդ երբ շէնքին մօտ կը բացուի իր սեփական ջրհորը*(*)։

ACRNE *Յունիս* 1*է Յուլիս* 24, *մօտ երկու ամիս մարդասիրաբար սնուցանելէ եւ պաշտպանելէ ետք մեր որբերը, Ճիւնիէ փոխադրութեան պարագային մէկ շարժուան ալ կը տրամադրէ մեզ եւ այդ բոլորը,* Major Nicols*ի եւ* ACRNE*ի քօմիթէին ազնիւ ու բարեհաճ կարգադրութեամբ նուէր կընծայուին Որբանոցիս համար։*

## ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՇՐՋԱՆ

*Վարիչ Մարմինը, Տնօրէն Ղըլիկեանի աջակցաբար, կարելի ամէն ջանք կ'ընէ որպէս զի որբերը հանգստօրէն զետեղուին ի Ճիւնիէ։ Ամիսներէ ի վեր ընդհատուած կրթական աշխատանքը վերսկըսելու համար*(**) *կը ձեռնարկուի ուսուցչական մարմնի վերակազմութեան. Ներքին պաշտօնէութեան պակասն ալ հետզհետէ կը լրացուի եւ շնորհիւ ձեռք առնուած միջոցներու, Որբանոցը շատ քիչ ատենէն կը վերստանայ իր առջի կազմակերպութիւնն ու բարեկարգ վիճակը։*

---

(*) Շէնքը երկար ատեն զինուորական գրաւման տակ մնացած ըլլալով, շատ աղտոտ եւ տեղ տեղ անբնակելի վիճակ մը ունէր. ջուրը մեծագոյն բարիքը դարձած է շէնքին համար։

(**) Ըլլա՛յ Այնթապ, հիւանդանոցին մէջ, եւ ըլլա՛յ Պէյրութ, Քէմբի մէջ, կրթական տեսակէտով ոչինչ կարելի եղած էր ընել։

## ՈՐԲԱՆՈՑԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Acrneի նպաստին դադարման հետ Կեդրոնը ձեռք կ'առնէ Որբանոցի մատակարարական ամէն հոգը և իր ամսական կանոնաւոր առաքումներով (դրամ, զգեստեղէն, գրենական պիտոյք եւլն.) կը փութայ բառնալ նիւթական լուծը՝ որ երկար ատեն ճնշած էր որբանոցը ։

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ՆՊԱՍՏ

Վարիչ Մարմնոյ Ատենապետ Հայր Պօղոս Վրդ. Արիսի դիմումներուն արդիւնքով կարելի կ'ըլլայ ֆրանսական Assistance Publiqueէն որբանոցիս համար ապահովել իր ամսական ալիւրը(*) (որբ գլուխ օրական կէս քիլօ հաշուով)։ Բաց աստի, իբրև չարունակութիւնը Այնթապի մէջ ստացուող կրթական նպաստին, նոր դիմումի մը վրայ, յետ քննութեան որբանոցիս կը յատկացուի տարեկան 3000 ֆրանքի նպաստ մը, Inst. Publiqueի 19 Նոյեմբեր 1920 թուակիր պաշտօնագրով (**)։ Ատեն ատեն գրենական նպաստներ ալ կը ստացուին, ի չարս նպաստընկալ տարբեր հաստատութիւններու ։

## ՈՐԲԱՆՈՑԸ՝ ԻԲՐԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ

Որբախնամ Ընկերութեան Այնթապի որբանոցը, իր հաստատութեան օրէն ասդին, մասնաւոր կարեւորութիւն ընծայած է ուսման, այն համոզումով, թէ որբերը ըլլա՛յ իբրև արհեստաւոր և ըլլա՛յ իբրև անհատ քաղաքացի, միշտ պէտք պիտի ունենան զէթ նախակրթարանային ուսումի մը, ճանչնալու համար իրենք զիրենք և գիտակցօրէն նուիրուելու համար այն աշխատանքին, որուն պիտի լծուին աներկբայ իրենց կեանքին տեւողութեանը ։

Որբանոցի ծիւնիէ հաստատումէն անմիջապէս յետոյ, կրթական տարեշրջանի սկիզբը. 1920 Հոկտ., Տնօրէնութեան կողմէ Որ-

(*) Որ շարունակուեցաւ տրուիլ մինչեւ 1921ի Օգոստոս ։

(**) Կրթական նպաստը կը շարունակուի մինչեւ օրս, փոխան 3000ի տարեկան 2400 ֆրանք ( % 20 նուազումով ) ։ Inst. Publiqueի կողմէ քննիչներ, մերթ Conseillerն անձամբ կուգան կ'այցելեն Որբանոցը ։ Կանոնաւորապէս կը մատուցուին եռամսեայ վիճակագրական տեղեկագիրներ ։

*բախնամի Կեդրոնի Վարչութեանց կը մատուցուի Կրթական Ծրագիր մը, ըստ որում Որբանոցը պիտի ունենար վեց կանոնաւոր դասարան, հետեւեալ բաժանումով. —*

I. Ծաղկոց. — (*Ընտելարան-վարժոց՝ սկսնակներու համար*)։

II. Նախակրթարանի դասարաններ. —

1) *Առաջին Դասարան.* — *Տարր. Ա. և Բ. տարիներ*։
2) *Երկրորդ* » — *Մանչերու և աղջկանց առանձին բաժանումներով*։
3) *Երրորդ Դասարան.* — *Միջին Ա. և Բ. տարիներ*։
4) *Չորրորդ* » — *Երկսեռ (ի հարկին մանչերու և աղջկանց առանձին բաժանումներով)*։
5) *Հինգերորդ Դասարան* — (*Բարձրագոյն Կարգ, երկսեռ*)։

*Ուսուցման նիւթերը պիտի ըլլային Հայերէն և Ֆրանսերէն լեզուներ, Կրօն (=Բարոյագիտութիւն), Հայ. Պատմութիւն, Ուսողութիւն, Աշխարհագրութիւն, Իրագանութիւն, Գեղագրութիւն, Երգեցողութիւն, Մարմնամարզ, և Բարձրագոյն Դասարանին համար՝ Ընդհ. Պատմութիւն, Բնապատմութիւն, Բնագիտութիւն եայլն, որոնք պիտի համադրէին իրենց մէջ* պիտանին *ու* հաճելին *միանգամայն*։

*Մատուցուած Կրթական Ծրագիրը Որբախնամի Վարչութեանց եւս գնահատութեան ու հաւանութեան արժանացած ըլլալով, կիրարկութեան կը դրուի Նոր տարեշրջանի հետ*։

## 1920 ՀՈԿՏ.Է 1921 ՅՈՒՆԻՍ ԿՐԹԱԿԱՆ ՏԱՐԻՆ

*Օգոստոս-Սեպտեմբերի պատրաստական դասախօսութիւններէն ետք* 1920 *Հոկտ.ին կը սկսին կրթական կանոնաւոր աշխատութիւնները։ Որբերը կը բաժնուին հինգ դասարանի և Այնթապի Թահուբոհէն, քէմբի վրանոցներուն կեանքէն ազատուած, անցած վեց ամիսներու ամլութիւնը կը փոխարինեն կրկնապատկուած աշխատանքով։ Ուսուցչական Մարմինը*(*) *իր կողմէ ոչինչ կը զլանայ վառ*

(*) Ուսուցչական Մարմնոյ կազմը. = Տիար Գ. Ղայթիկեան (Տնօրէն), Պարոններ՝ Ասուր Դայպազեան, Յովսէփ Ղալիկեան, Գրիգոր Պօղարեան (Մարզու-հար), Օրիորդներ՝ Ազնիւ Տէմիրճեան, Ազնիւ Աղաեան։

*պահելու համար արծարծուած ուսումնական եռանդը և* 1920է 1921 *կրթական տարեշրջանը որբերու և որբանոցի համար ամէն տեսակէտով կ'ըլլայ բեղուն և արդիւնաւոր։*

## ԵՐԳԶԱԽՈՒՄԲ—ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

1921 *Փետրուարէն սկսեալ ուսման նիւթերուն կ'աւելցուի երաժշտութիւնը* (*ձայնական և գործիական*), *այցելու ուսուցչութեամբ ծանօթ երաժիշտ ջութակահար Պ. Յակոբ Իւվէզեանի։ Կը կազմուի երկսեռ երգչախումբ մը, մօտ* 80 *հոգիով, և նուագախումբ մը՝ ջութակ-մանտոլին-ֆլիւթ նուագող* 12 *որբ-որբուհիներով։ Որբերն ու որբուհիները Պ. Իւվէզեանի մարզումին տակ շատ քիչ ատենի մէջ կը յաջողին հասարակութեան առջեւ ներկայանալ իրենց երգերով ու նուագներով, բացառիկ հրապոյր մը և առաւելութիւն մը ընծայելով Որբանոցի հանդէսներուն և հաւաքոյթներուն* (*)։

## ՄԱՐԶԱՆՔ

*«Առողջ միտք՝ առողջ մարմնի մէջ». ա՛յդ եղած է Այնթապի որբանոցին վարիչներուն տիրական համոզումներէն մին և անով իսկ բացատրելի է մասնաւոր կարեւորութիւնը որ կ'ընծայուի խաղի, մարզանքի և դասարանային կամ հաւաքական շրջագայութեանց։ Այնթապի մէջ սկսուած շուէտական մարզանքը շարունակուած է ի Ճիւնիէ*(**)։ *Խաղի, մարզանքի փորձերուն համար մասնաւոր կերպով վարձուած է և յարդարուած այն գետինը՝ որ կը տարածուի Որբանոցի արդի շէնքին դիմաց։ Վերջին երկու տարիներուն ներմուծուած են ըմբշական* (athlétique) *այլեւայլ մարզանքներ եւս* (*ցատքումներ, վազքեր, չուան, ծանրութիւն վերցնել, գունդ արձակել ևլն.*)։ Foot-ball*ի բաւարար գետին չգտնուելուն, զոհացուած*

---

(*) Բոլոր որբանոցներէն տասերն եւս, մեր որբանոցին հետեւելով իրենց ուսման ծրագրին մէջ առած են երաժշտութիւնը (ոմանք՝ լոկ ձայնական, երգչախումբ, ուրիշներ՝ գործիականն ալ — նուագախումբ, ժամմար — միասեռ), այցելու ուսուցիչ ունենալով Պ. Յ. Իւվէզեանը։

(**) Որբանոցի մարզանքի ուսուցիչներն եղած են. Պ. Յ. Մովսեսեան (Այնթապի մէջ), իսկ ի Ճիւնիէ, մի քանի առժամեայ մարզիչներէ ետք, Պ. Ստեփան Տարսունի (Ճիպէյլի որբանոցէն, 3-4 ամիս) եւ Պ. Վարդան Իսքէնտէրեան (վերջին երկու տարիներու ընթացքին)։

է Basket-ballով։ Ամառ օրերուն տղոց համար այլապէս հաճելի մարզանք մը կը դառնայ ծովային լողանքը, առտու և իրիկուն։

## ԱՇԽԱՏԱՆՈՑ

Որբերու համար արհեստներու ուսուցման անժխտելի պէտքը առջի օրէն գնահատուած ըլլալով, Որբանոցին Ճիւնիէ փոխադրուելէն անմիջապէս ետք, Տնօրէն Դպլիկեան և նոր Վարիչ-Մարմինը խորհրդակցաբար պատրաստած են համեստ ծրագիր-պիւտճէ մը՝ հիմնելի աշխատանոցին համար և որ Կեդրոնի Վարչութեան մատուցուած է 1921 Մայիսին։

Աշխատանոցը պիտի ունենար երեք ճիւղ. 1) դերձակութիւն, 2) հիւսնութիւն, 3) կօշկակարութիւն. և որբերը, իրենց ուսումը շարունակելով հանդերձ, օրուան կէսը պիտի անցնէին աշխատանոցի մէջ, մարզուելու համար վարպետ արհեստաւորներու ձեռքին տակ։ Արհեստաւորներուն պիտի տրուէր ձրի խանութ — Որբանոցի շրջանակէն, և ամսական որոշ մի վճարում. իսկ գործի, գործիքի, գրամագլուխի հայթայթումը և տղոց վարժումը՝ պիտի պատկանէր արհեստաւորներուն. Որբանոցը շահի կամ վնասի խնդրոյն մէջ ալ պիտի մնար բացարձակապէս անմասն։

Կեդրոնը, գնահատելով մատուցուած ծրագիրը, համամտութիւն կը յայտնէ և կը հրահանգէ Յուլիսին իսկ բանալ աշխատանոցը և կուտայ առ այդ խնդրուած պիւտճէն։

Արհեստաւորներու ճարումը, նախադրեալ մի քիչ խստապահանջ պայմաններու բերումով, ամիսներու կը կարօտի և մասնաւոր ծանուցումներէ և փնտռտուքներէ ետք հազիւ կը յաջողի։ Սեպտեմբերի վերջերը կը կնքուին պայմանագրութիւնները և Հոկտեմբեր 1ին, 1921, Որբանոցի կողքին կը բացուի իր Աշխատանոցն ևս(*)։

## ՁԵՌԱԳՈՐԾ-ԱՍԵՂՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Ինչ կարեւորութիւն որ կ'ընծայէր աշխատանոցը՝ մանչերուն համար, նոյնը պիտի ընծայէր ձեռագործ-ասեղնագործութիւնը՝

(*) Աշխատանոցի վարպետներն. — Դերձակ՝ Պ. Մովսէս Միսիրեան (Այնթապցի), կօշկակար՝ Պ. Արսէն Կիւլէսէրեան (Այնթապցի), հիւսն՝ M. Habib Younis (տեղացի մը)։

աղջիկներուն համար, որոնք, խոհանոցային ու ներքին ամէն տեսակ աշխատութեանց և դասերու մասնակցելով հանդերձ, պիտի կըրնային հրահանգուիլ այդ ճիւղի մէջ ևս։ Որբանոցը, իր Այնթապ գտնուած օրերուն չէր կրցած ձեռագործի համար մասնաւոր ուսուցում մը ունենալ. Ճիւնիէ հաստատուելէ ետք ալ, առաջին տարեշրջանին, այդ ճիւղը մնացած էր առկախ. բայց, 1921ի տարեկան արձակուրդէն սկսեալ օրուան որոշ ժամերը կը յատկացուին ձեռագործի և ասեղնագործութեան(*)։ 1921ի վերջերը նշանակելի արտադրութիւն մը կար արդէն (սեղանի և ափսէի ծածկոցներ, զանազան ժանեակներ, բանուած թաշկինակներ ևլն.), որոնցմէ 81 կտոր կը ղրկուի Աղեքսանդրիա, Կեդրոնի Վարչութեան։

## 1921-1922 ԿՐԹԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԸ

Ճիւնիէյի մէջ կրթական երկրորդ տարեշրջանը կը սկսի 1921 Հոկտեմբերին և կը տևէ մինչև 1922 Յունիս։ Նոր տարեշրջանին Որբանոցը կ'ունենայ բացի Ծաղկոց-Մանկապարտէզի բաժինէն հինգ կանոնաւոր դասարան։ Վերին երկու դասարաններու ուսանողութիւնը, իբր 30 հոգի, օրուան կէսը դասի և միւս կէսը աշխատանոցի զբաղմանց կը յատկացնէ. աղջիկներն ալ, նոյն կերպով, օրուան կէսը ուսման և միւս կէսը ձեռագործի կու տան։ Ուսուցչական Մարմինը, դոյզն փոփոխութեամբ կը պահէ իր առջի կազմը(**)։ Նոր շրջանի հետ՝ ուսմանց ծրագրին վրայ կ'աւելցուի գծագրութիւնը(***) և Կեդրոնի մասնաւոր մի վարկով կը շինուին գրասեղան-նստարաններ՝ երկու դասարանի բաւարար։

1921-1922 տարեշրջանին, բացի որբերէ (համագումար՝ 128 հոգի, 89 մանչ և 39 աղջիկ), դասաւանդութեանց կը մասնակցին 12ի մօտ ցերեկօթիկ ուսանողներ ևս — Ճիւնիէ հաստատուած հայ ընտանիքներու զաւակներ — որոշ տարեվճարներով։

---

(*) Ուսուցչուհի՝ Օր. Ա. Աղաեան։

(**) Ուսուցչական Մարմնի կազմը. — Տիար Ղ. Ղըլիկեան (Տնօրէն), Պարոններ՝ Յովսէփ Ղըլիկեան, Վարդան Խաչէնտէրեան, Սարգիս Վէզիրեան, Գրիգոր Պօղարեան (Քարտուղար), Յակոբ Իւվէզեան (այցելու). Օրիորդներ՝ Ազնիւ Տէմիրճեան, Ազնիւ Աղաեան։

(***) Ուսուցիչ՝ Պ. Վ. Խաչէնտէրեան։

## ԳՐԱԴԱՐԱՆ

*Որբանոցը, Այնթապի մէջ, քաղաքական աննպաստ պայմաններու բերումով չէր կրցած ունենալ իր սեփական գրադարանը, որու պէտքը, սակայն, զգալի կը սկսէր դառնալ քանի՛ որբերը կը զարգանային ուսման մէջ։* 1921*ի Ամանորի հանդէսին, Պէյրութի ազգայիններէն Տիար Աբրահամ Սարրաֆեան և Տիար Մկրտիչ Պօղոսեան գովելի նախաձեռնութիւնը կ'ունենան ինքնաբեր նուիրատուութիւններով(*) հիմը դնելու Որբանոցի Գրադարանին, որ այնուհետև, նորանոր նուէրներով և գնումներով ճոխացած՝ այժմ ունի* 400*է աւելի հատորներ (Հայերէն, Ֆրանսերէն և Անգլիերէն լեզուներով)։ Կեդրոնն ալ գնահատելով գրքի և թերթի պահանջը, իր կողմէ ձեռնարկներ կ'ընէ և կ'սկսի ղրկել տալ Եգիպտոսէն՝* Արեւն *ու* Յուսաբերը*, և Պոլսէն* Ճակատամարտը*։*

*Պոլսէն և արտասահմանէն, բաժանորդագրութեամբ կամ նուիրատուութեամբ Որբանոցիս ղրկուած են հետեւեալ թերթերն եւս.—* Դարման, Հայ-Պատանի, Հայ-Սկաուտ (*Պոլսէն*)։ —Ապագայ, Journal de Broderie (*Բարիզէն*)։ — Ազգ-Պահակ (*այժմ* Պայքար), Հայրենիք (*օրաթերթ և ամսագիր*), Կոչնակ, Նոր Կեանք-Արօր (*այժմ* Նոր օր), Ջանասէր, Փրկութիւն (*Ամերիկայէն*) *ևլն.։*

## ԱՅԳ

*Որբանոցի բարձրագոյն դասարանը, արտաքին ընթերցումի հետ միասին, գովելի նախաձեռնութեամբ մը* 1922 *Մարտէն սկսեալ կը հրատարակէ* Այգ *անուն աշակերտական կիսամսեայ պարբերաթերթ մը, ձեռագիր,* 16 *էջնոց, հոն համախմբելով արձակ և ոտանաւոր գրական նախափորձերը որբերուն և որբուհիներուն։* Այգ *կանոնաւորապէս հրատարակուած է մինչև օրս և ի մօտոյ պիտի դառնայ Որբանոցի ընդհանուր աշակերտութեան օրկան, խմբագրական նոր կազմով։*

---

(*) Տիար Սարրաֆեան նուիրած է, երկու անգամով, 150 ղրշ. Տիար Պօղոսեան՝ 59 : Յիշատակելի են Տիար Դաւիթ Աղամեանի (եօթը անգամով, 70 կտոր) եւ Ուսուցչական Մարմնի (100 կտոր) նուիրատուութիւններն եւս :

## ՆՈՐ ՇԷՆՔԵՐ

Նկատի ունենալով միակ շէնքի մը, մայրապետներու շէնքին, անբաւականութիւնը 130ի մօտ որբերն ու 15ի չափ ներքին պաշտօնեաները պարփակելու համար. միւս կողմէ, նկատի ունենալով որբերն ու որբուհիները անջատելու պահանջը, կեդրոնի պատուիրակ Տիար Գրիգոր Մանուկեանի հրահանգին վրայ 1921-1922 տարեշրջանին վարձուած են երկու շէնքեր եւս. մին՝ իբրեւ ննջարան մանչերու, միւսը՝ իբրեւ հիւանդանոց(*)

## ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ԵՒ

## NEAR EAST RELIEF

Եգիպտոսի անվերջ խառնակութիւնները, Կիլիկիոյ պարպումը և վերջապէս, տնտեսական աննպաստ պայմանները, բնական է որ իրենց ներգործումը ունենային Որբախնամի հասոյթի աղբիւրներուն վրայ: Հանգամանքներ, հաւաքոյթներ, նոյնիսկ վիճականանութիւնն ու դանձանակները, նախորդ տարիներու բաղդատմամբ անզոհացուցիչ արդիւնքներ կը բերէին և Որբախնամ Ընկերութիւնը, բռնադատուած, հեռահետէ ձեռք կը քաշէր Ատանայի, Պազուպայի որբանոցներէն՝ բաւականանալու համար ծիւնիէ փոխադրուած Այնթապի Որբանոցին գոյութեան պահպանումով:

Դժբախտաբար, տնտեսական պայմանները. Քռիզը, այդ իսկ դժուար կը դարձնէին և ապագայ անստգութեանց առաջքը առնելու համար էական կը դառնար ունենալ կա՛մ նպաստի բղխուն աղբիւր մը, կա՛մ օտար աջակից-պաշտպան մը: Յրանս. Իշխանութենէն լայն աջակցութիւն մը ակնկալել, նպաստաւոր պայմաններով, գրեթէ անկարելի ըլլալուն կը մնար գործակցական համաձայնութեան մը գալ Near East Reliefի հետ, որ արդէն ինքզինք բացարձակապէս նուիրած էր հայ որբերու խնամածութեան, Հայաստանէ մինչև Պաղեստին:

Ամերիկացիք, ի սկզբանէ անտի բարեացակամ վերաբերում ցոյց տուած ըլլալով մեր Որբանոցին հանդէպ — Այնթապի մէջ, և

---

(*) Հիւանդանոցի շէնքը, 1922 Յուլիսէ 1923 Ապրիլ առժամապէս տրամադրուած է Պ. Յ. Իւլէզեանի, որուն վարձքով:

*մանաւանդ՝ Այնթապէ փոխադրութեան օրերուն և Պէյրութի* Քէմբը(*) *— անհաւանական չէր որ նոյնքան բարեացակամութեամբ ընդառաջ գային ըլլալիք «գործակցութեան» առաջարկի մը։*

## ԲԱՆԱԿՑՈՒԹԵԱՆՑ ՍԿԻԶԲԸ

*Այդ ուղղութեամբ աշխատելու և* Mr. Mc Afee*ի Պէյրութ-Սիւրիա շրջանակին նախկին վարիչ-անօրէնին հետ հասկացողութեան մը գալու պաշտօնով,* 1922 *Ապրիլին կեդրոնի կողմէ Պէյրութ կը ղրկուի Տիկին Վիքթորիա Արշարունի, որ, Տնօրէն Ղպլիկեանի և Վարիչ Մարմնի հետ խորհրդակցաբար կը ձեռնարկէ բանակցութեանց։* Mr. Mc Afee *գոհունակութեամբ նկատի կ'առնէ տարուած առաջարկը և մի քանի կէտերու շուրջ հասկացողութիւններ ալ կը կայացուին. սակայն վերջնական համաձայնութեան մը յանգիլ անկարելի կ'ըլլայ։ Կարգ մը պղտորիչ ձեռքեր, խեղաթիւրումներով և արտաքին աննպաստ պայմաններու շահագործումով կ'աշխատին վիժեցնել սկսուած ձեռնարկը և երբ,* Mr. Mc Afee *Ուրֆա-Մարտին-Խարբերդ-Սվազ շրջանակին որբանոցները փոխադրելու գործով Թիւրքիա կ'անցնի, բանակցութեանց շարունակումը կ'առկախուի անորոշ ժամանակի մը համար։*

## ՆՈՐ ԴԻՄՈՒՄՆԵՐ

*Տիկին Արշարունի Եգիպտոս կը դառնայ Յունիսի երկրորդ շաբթուն. սակայն, Տնօրէնութիւնն ու Վարիչ Մարմինը չեն դադրիր ներկայացող պատեհութիւններէ օգտուելով նոր դիմումներ կատարելէ և ի նպաստ գործակցութեան աշխատելէ։ Վարիչ Մարմնոյ Ատենապետ Տիար Ա. Սարրաֆեան ազդու ձեռնարկներ կ'ընէ* Mr. Mc Afee*ի փոխանորդ՝ գործօն-անօրէն* Mr. B. Dodge*ի մօտ։ Կատարուած դիմումները ամուլ չեն մնար և քօմիթէին որոշումով մեզի կը տրուին* 40 *որբեր (*30*ը մանչ և* 10*ը աղջիկ),* 1922 *Օգոստոսին* Near East*ի պաշտպանութեամբ (որբ գլուխ ամսական* 10*ը տոլարով)։*

---

(*) Բացի սնունդի փոխադրութեան օժանդակութիւններէն, ատեն ատեն տնտեսական (Այնթապ) եւ զգեստեղէն (պաթթանիա, բրդէ շապիկ եւլն.) օգնութիւններ ալ եղած են մեր Որբանոցին։

## ԱՆԱՏՕԼՈՒԻ ՈՐԲԵՐԸ

Mr. Mc Afeeի ջանքերով Հայկ. Նահանգներէ փոխադրուած 3000ի մօտ որբերն ու որբուհիները, մասամբ Near Eastի գոյ որբանոցներուն մէջ բաժնուած (Ճիպէյլ, Ղազիր, Անթիլիաս, Սայտա) և մասամբ՝ նոր կայաններու մէջ զետեղուած էին (Նէհր Իպրահիմ, Մամըլթէյն, Զուգ, Համմանա ևլն.)։ Սակայն, 1922ի վերջերը, երբ Գօնիա-Թալաս-Կեսարիա շրջանակին որբերն ալ, Միլիտական կառավարութենէն վտարուած, եկան ապաստանելու Պէյրութ, Near Eastը, անձրևի տակ, անպատսպար մնացած նորեկ որբերու համար առժամեայ կայաններ ճարելու ստիպողականութեան առջև գտնուեցաւ։ Mr. Mc Afee, ուրիշ որբանոցներու չարքին մէկն ալ դիմեց որ այդ որբերէն մաս մը առնենք մեր պաշտպանութեան տակ։ Առաջարկը սիրով ընդունուեցաւ և նախ՝ 54, ապա՝ երեք անգամով 113 հոգի, մանչ և աղջիկ, առնուեցան մեր Որբանոցը, Near Eastի հաշուոյն։

## ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ԵԳԻՊՏՈՍ ԵՐԹԸ

Գործակցութեան մը հարցը և բանակցութեանց վերսկսումը այնուհետև աւելի պահանջական կը դառնային, մանաւանդ որ Near Eastը կը ծրագրէր Ճիւնիէյի մէջ ալ ունենալ իր սեփական Որբանոցը։

Որբախնամը, Իզմիրի և Պոլսոյ անսպասելի աղէտներէն վերջ անհանգստէ աւելի ևս ճնշուած, մանաւանդ կերպով կը շեշտէր բանակցութեանց վերսկսման պէտքը։ Տնօրէն Դավիթեան, Վարիչ Մարմնոյ լիազօրութեամբ, տեսակցութիւններ կ'ունենայ Mr. Mc Afeeի հետ, որ անձնապէս խիստ բարեացակամ արտայայտութիւններէ ետք, պատրաստութիւն կը յայտնէ լայն գործակցութեան. սակայն, քոմիթէին պայմանները, զորս Փետր. 5ի տեսակցութեան մէջ կը յայտնէ Mr. Mc Afee, այնքան գոհացուցիչ չէին, նկատելով որ գործակցութենէ աւելի միացում մի, ձուլումի ձգտում մը կը մատնէին անոնք։

Որբախնամը, ի սկզբանէ անտի, բանակցութեան հարցին մէջ գործակցութիւն մը յաջողցնելու տեսակէտը պաշտպանելով, անպայման համաձայնութիւն մը, բնական է ո՛չ մէկ կերպով պիտի

ընդունելի ըլլար մեզ համար. քանի որ, այդ՝ Որբախնամին չորս տարիներու աշխատանքովը պահուած և մօտ 12,000 եգ. ոսկի արժած մի հաստատութիւն, իր կալուածն ու որբերովը ընկլուզումը պիտի նշանակէր Near Eastի մէջ։

Ամէն պարագայի տակ, հարկ եղած լուսաբանութիւնները տալու և Վարչութեանց վերջնական հրահանգները առնելու համար անհրաժեշտութիւն կը զգայինք որ Տնօրէն Դպլինեան անձամբ Եգիպտոս այցելէր և ընէր հարկ եղած տեղեկատուութիւնը։

Տէր Դպլինեան մեկնեցաւ Փետրուարի կէսին և երկու շաբաթ Եգիպտոս մնալէ՝ պատեհութիւններ ունեցաւ տեսնուելու և խորհրդակցելու Աղեքսանդրիոյ և Գահիրէի Վարչութեանց հետ։ Համագործակցութենէ տարբեր ձևի վրայ համաձայնութիւն մը՝ կեդրոնի Վարչութեանց համար ևս ընդունելի չի պիտի ըլլար ամենևին։

## ԲԱՆԱԿՑՈՒԹԵԱՆՑ ԵԼՔԸ

Տնօրէնութեան դարձէն ետք, Near Eastի Վարչական Կազմին մէջ յառաջ եկած փոփոխութեան մը բերումով, Mr. Mc Afeeի փոխանորդող Mr. E. Blatchfordի հետ սկսան շարունակուիլ բանակցութիւնները, որոնք, վերջապէս, շնորհիւ նոր Տնօրէն Mr. Fowleի և Քոմիթէի, ու մանաւանդ՝ Mr. Blatchfordի բարեացակամ ու անկեղծ վերաբերմունքին, Մայիսի սկիզբը յանգեցան գործակցական համաձայնութեան մը։

Այժմ Near Eastը բացի իր ունի 40 որբերէն, 121 (*) հոգի ևս ունի մեր պաշտպանութեան տակ, որոնք կը պահուին իր հաշուոյն, ամսական 9 տոլարով։

Ներկայիս որբերու ընդհանուր թիւն է 279 (**), հետևեալ բաժանումով. —

| | Մանչ | Աղջիկ | Գումար |
|---|---|---|---|
| Որբախնամի սեփհական | 87 | 35 | 122 |
| Near Eastէ պաշտպանեալ | 30 | 127 | 157 |
| Գումար | 117 | 162 | 279 |

(*) 117 որբ, 4 մայրիկ։
(**) 80ի մօտ տարբեր վայրերէ։

## 1922 - 1923 ՏԱՐԵՇՐՋԱՆԸ

*Որբանոցը, այս տարի իր կրթական երրորդ տարեշրջանը բոլորած է ի Ծիւնիէ, նոյն դասարաններով և կրթական նոյն ծրագրով(*)։ Բարձրագոյն դասարանները, ըստ առաջնոյն, օրուան կէսը ուսման և միւս կէսը աշխատանոցի տուած են։* Near East*ի որբերն ու որբուհիներն ալ, գրեթէ ամբողջութեամբ առնուած են դասարաններու մէջ։ Այս տարի ևս ունեցած ենք* 15*ի մօտ ցերեկօթիկ ուսանողներ։ Ուսուցչական Մարմնի կազմն էր.*

*Պարոններ՝ Յովսէփ Ղպլիկեան, Վարդան Խաչէնտէրեան, Մուրատ Մուրատեան* (Near East*ի որբերուն ժամանումէն ետք) և Գրիգոր Պօղարեան (քարտուղար)։*

*Օրիորդներ՝ Ագնիւ Տէմիրճեան, Նարդուհի Նարինեան, Սուլթան Սամուէլեան* (Near East*ի որբուհիներուն հետ,* 3 *ամիս) և իբրեւ օգնական-ուսուցչուհի, Օրիորդներ՝ Ծաղկանոյշ Սարրաֆեան* (Near East*ի որբուհիներէն) և Աննա Խանձէեան, Զարուհի Լեւոնեան (Որբանոցի Ե.րդ դասարանի ուսանողուհիները)։*

*Պ. Յ. Իւվէզեան ըստ առաջնոյն շարունակած է իր ձայնական և գործիական երաժշտութեան դասերը, երգչախումբի և նուագախումբի կազմակերպութիւններով։*

*Գծագրութիւնը շարունակուած է այն չափով որ թոյլատու եղած են պարագաներն ու պայմանները։ Տղոց սև մատիտի փորձերը (նաթիւր մորթ, բնանկար ևլն.), շատերու կողմէ գնահատութեանց արժանացած են զանազան առիթներով. ոմանք իւղանկարի փորձեր ալ ունեցած են կատարեալ յաջողութեամբ։ Պէյրութաբնակ ծանօթ նկարիչ-ճարտարապետ Տօքթ. Մ. Այթունեան սիրայօժար յանձն առած է գծագրութեան մէջ յաջողակութիւն ցոյց տուող որբերէն մէկը որդեգրել իր մօտ և հնարաւորութիւն տալ որ զարգանայ ու յառաջդիմէ այդ ճիւղին մէջ։*

*Աշխատանոցի զբաղումները նոյն կանոնաւորութեամբ յառաջ տարուած են. վերին երկու դասարաններու հետ երրորդ դասարան*

---

(**) Բարձրագոյն կարգերու խանի մը դասերը, Ընդհ. Պատմութիւն, Բնագիտութիւն եւայլն, յապաւուած են աշխատանոցային զբաղումներու կամ գործիքներու պակասին բերումով։

մ՚ալ աշխատանոց հետեւած է այս տարի․ որով, արհեստի հետեւող տղոց թիւը եղած է 40, ընդհանուր որբերու իբր մէկ երրորդը։

Վերջացող տարեշրջանին մէջ մասնաւոր ուշադրութիւն ընծայուած է աղջկանց ձեռագործ-ասեղնագործութեան, ուսուցչուհի ունենալով Որբանոցի դերձակուհի՝ Տիկին Մառի Երեմեանը։ Նշանակութեան արժանի է այն յառաջդիմութիւնը որ գտնուած է ըլլա՛յ արտադրութեանց քանակին և ըլլա՛յ անոնց որակին մէջ։ Բացի պրօտէ, ֆիլէ, տանթէլի նման բանուածքներէ, չափահաս աղջիկները մասնաւոր հրահանգում մը ունեցած են կարուձեւի և դերձակութեան մէջ — համեստ շահ մըն ալ ապահովելով Որբանոցին։ Ասեղնագործութեան արտադրութիւններէն 60 կտոր վիճակահանութեան դրուած են Յունուարի մէջ․ մաս մը՝ ներկայացող գնորդներու վաճառուած է յարմար գիներով․ ուրիշներ՝ պատրաստուած են մասնաւոր յանձնարարութեամբ։ Յուլիսի սկիզբը պիտի ունենանք երկրորդ վիճակահանութիւն մը, 80 կտորի համար։

## ԹԱՆԹԱՅԻ ԳԱՂՈՒԹԻՆ ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆԸ

Այս առթիւ գոհունակութեամբ պիտի նշանակենք Թանթայի հայ գաղութին 20½ անգլ. ոսկիի մի նուիրատուութիւնը, որ յատկացուած է Որբանոցիս որբուհիներուն ձեռագործ-ասեղնագործութեան, իբրև անձեռնմխելի դրամագլուխ, որբուհիներուն՝ գործ և որբանոցին՝ հասոյթ մը ապահովելու համար ընդմիշտ։

## Մ
## ՀԱՐՍՆԱՑՈՒՆԵՐ

Որբանոցիս որբուհիներէն ոմանք, ներկայացող յարմար թեկնածուներու խնդրանքին գոհացում տրուելով, սկսած են ամուսնացուիլ։ 1922է ասդին հարսնացուած են․

1) Օր. Հռիփսիմէ Եաղուպեան (Այնթապցի), ղրկուած՝ Գանատա, Պ. Մանուէլ Մղրըպլեանի (Այնթապցի)։

2) Օր. Խանըմ Ճուպպալեան (Այնթապցի), ամուսնացուած՝ Պ. Պարոյր Գազանճեանի (Այնթապցի ի Ճիւնիէ)։

3) Օր. Մաքրուհի Օհանեան (Կիւրինցի), ամուսնացուած՝ Պ. Պետրոս Ծառուկեանի (Կիւրինցի ի Պէյրութ)։

4) Օր. Արեւալոյս Գաղանճեան (Կարնեցի), նշանուած (*) Պ. Սահակ Ճիլմէճեանի (Մալաթիացի, ի Բրուքլին)։

5) Օր. Արուսեակ Պորսումեան (Այնթապցի), ամուսնացուած՝ Պ. Սարգիս Տէյիրմէնճեանի (Այնթապցի ի Կիպրոս)։

Բացի որբուհիներէն, մի քանի մայրիկներ ալ ամուսնացուած են ըլլա՛յ Այնթապի մէջ, ըլլա՛յ ի Ծիւնրէ։

Ամուսնութեան խնդրանքով դիմում կատարողներէ կը պահանջուին ամուրիութեան, առողջութեան, բարոյականի և բարեկեցութեան վկայականներ, ազգային օրինաւոր Մարմիններէ կամ ծանօթ անձերէ տրուած։ Ամենախիստ զգուշութեամբ կը լրացուին օրինական պահանջները. քանզի, Որբանոցս ի սկզբանէ անտի իրեն համար սկզբունքի խնդիր մը նկատած է տիպար ընտանիքներու, երջանիկ բոյներու կերտումը։

## ՆԵՐՔԻՆ ԿԱԶՄ

Որբանոցը ընտանեկան կազմ մը ունի ներքնապէս. հոն կան հայրիկ մը, մայրիկներ և զաւակներ։ Որբերն ու որբուհիները իրենց օժանդակութեան բաժինը ունին մաքրութեան, հսկողութեան, գիշերապահութեան գործերուն և խոհանոցային աշխատանքներուն մէջ։ Աշխատանքի ժամերուն ամէն ոք կը լծուի իր պաշտօնին և ներքին փոքր ինքնավարութիւնը որ կայ ասոնց մէջ, կարելիութիւն կուտայ որ դաստիարակներու վերահսկողութեան տակ ամէն ինչ կատարուի անթերի և մաքուր։ Մէկ խօսքով, Որբանոցը իր ներքին կազմով տուն մըն է, բազմանդամ ընտանիք մը — ինչ որ հայ և օտար այցելուներու կողմէ ալ գովեստ տրուած է քանիցս։

## ՈՐԲԵՐՈՒ ԱՌՈՂՋՈՒԹԻՒՆԸ

Որբանոցիս որբերուն առողջութիւնն ու աշխոյժ կենցաղը ամէն ժամանակ արժանացած են անկեղծ գնահատումներու. արդարև, զոհունակութեամբ պէտք է նշանակենք թէ, Որբանոցս իր հաստատութեան օրէն ասդին, փոխանցիկ հիւանդութեանց կամ պէս պէս ախտերու յարձակումներէն զերծ մնացած է։ Աչքի, գլխու (գանջութիւն) և մորթի (բորոտութիւն) հիւանդութիւնները, բաղդատմամբ

(*) Դրկուած՝ Աղեքսանդրիա, ուր կը մնայ ցարդ։

*ուրիշ հաստատութիւններու, շատ աննշան համեմատութիւն մը ունեցած են միշտ. այնպէս որ, հիւանդանոց ունեցած ենք յաճախ՝ առանց հիւանդի։*

*Որբանոցը Ճիւնիէ հաստատուելէն ասդին ունի վճարեալ այցելու բժիշկ մը,* Dr. Tevfik Saliba (*)։ *Տոքթ. Մուշեղ Հատիտեան եւս, այն օրէն ի վեր որ ստանձնած է* Near East*ի որբանոցներուն այցելու բժիշկի պաշտօնը, շաբաթը մէկ կամ երկու անգամ կ՚այցելէ մեր Որբանոցն ալ և քննութիւններ կը կատարէ ձրիօրէն։*

## ՈՐԲԱՆՈՑԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

*Այնթապի Որբանոցը, հակառակ անոր որ փոխադրական դժուարութիւններէ զուրկ է, և շատ անգամ՝ իր գնումները Պէյրութէ ընել հարկադրուած, ծախքերու խնայողութեան տեսակէտէն առաջնութիւն մը ունեցած է Պէյրութ-Լիբանան շրջանակին մէջ տեղաւորուած տասնեակ մը որբանոցներու բաղդատմամբ(**)։*

*Ջամբուած սնունդը զօրացուցիչ է և ընտիր, որակով ու քանակով. մինչ նախընտրուած է գնել ապրանքի մը լաւը, մաքուրը. հացը՝ որ կը գնուի, անգլիական ալիւրի հացն է, լաւ եփուած և մաքուր։ Եւ հակառակ սնունդի տեսակէտով ցոյց տրուած այսքան* ծայրայեղ բծախնդրութեան *— ինչ որ դիտողութեանց առիթ կու տայ մերթ ընդ մերթ, Որբանոցի ուտեստեղէնի ծախքը որբ գլուխ ամսական 4 կամ 4.50 դրշ. եգիպտականէ աւելի չէ եղած (անցեալ և առջի տարիներուն)։ Վերջացող տարեշրջանին ուտեստեղէնի ծախուց օրական սակը եղած է 2 3/8 դրշ. եգիպտական. — զգալի նուազում մը՝ որ յայտնապէս որբերու թիւին յաւելման արդիւնքն է։*

*Ջամբուած սնունդը, իր ընդհանուր գծերուն մէջ հետեւեալն է. —*

Առտուները. = *Թէյ, խաշուած կաթ, պանիր, ձիթապտուղ, ապի չօրպա, ամառը՝ մրգեղէն։*

---

(*) Մօտ տարիէ մը ի վեր քաղաքապետ՝ Ճիւնիէյի :

(**) Առջի տարիներ որբ գլուխ տարեկան 32է 28 եգ. ոսկի, այս տարի՝ 18 1/2 եգ. ոսկի. (ուտեստի, զգեստի, շէնքերու, փոխադրութեան, ուսուցչաց, ուսումնարանի, վառելիքի, լուսաւորութեան ծախքեր, բժշկական ծախք եւ այլազան մեծ ու փոքր ծախքերը կը պարունակուին այդ գումարներուն մէջ) :

Կէսօրները. = *Միս և բանջարեղէն (շաբաթը երեք անգամ), խղով ապուր (ձաւար, բրինձ, ոսպ, շաբաթը երկու անգամ), ձէթով լուբիա, չորպա :*

Իրիկունները. = *Մրգեղէն (ըստ եղանակին), անուշեղէն (ռուբ, չամիչ, թուղ, արմաւ), պանիր ևլն., ևլն. :*

*Միևնոյն հոգածութեան ու բծախնդրութեան առարկայ են որբերու հանդերձանքն(*) ու անկողնի կազմածը. մանչերու կը տրուին տաբատ-բաճկոն-արտաքին շապիկ և աղջկանց՝ Փիսթան-չիտակ (գալիպ)-գոգնոց. իբրև ոտնաման կը տրուին երասկ, սանտալ և չափահասներու՝ մուճակ. ձմեռ ատեն կը գործածուի գուլպայ և բրդէ ֆանէլա : Անկողնի կազմածը կը բաղկանայ բրդէ անկողինէ, բարձէ և վերմակէ (քթանէ երեսով). ամառ ատեն վերմակը կը փոխանակուի պաթթանիայով :*

*Որբախնամը ցարդ կառավարուած է Որբախնամի ամսական առաքումներով և տեղային կարգ մը հասոյթներով : Տեղային հասոյթի գլխաւոր աղբիւրներն եղած են Ամերիկեան և Ֆրանսական նպաստները, ուսումնաթոշակները, վիճակահանութիւնը, ձեռագործի վաճառումները և կարգ մը նուիրատուութիւններ :*

*Վարիչ Մարմինը ամէն ամիս կանոնաւորապէս Կեդրոն կը յղէ միամսեայ հաշուեցոյց մը և տեղեկագիր մը :*

## ՈՐԴԵԳՐՈՒՄՆԵՐ

*Որբերու վճարովի* որդեգրումը՝ *որբանոցներու համար կենսական կարևորութիւն ունեցող ձեռնարկ մըն է անտարակոյս : Որբախնամը վաղուց սկսած է կիրարկել զայն և մեր որբերէն մէկ մասը արդէն որդեգրուած է Եգիպտոսի և արտասահմանի բարեսէր ազգայիններուն կողմէ : Վերջերս Պոսթոնի* Այնթապցիներու Ուսումնասիրաց Միութիւնն *եւս որդեգրած է երկու որբ : Որդեգրեալ որբերուն լուսանկարներն կը ղրկուին իրենց պաշտպաններուն, կենսագրական նոթերով(**) :*

(*) Առաջները՝ Եգիպտոսէ ղրկուած, այժմ՝ տեղւոյն վրայ պատրաստուիլ սկսած :

(**) Տնօրէնութեան կողմէ 1922 Հոկտեմբերին շրջաբերական նամակ մը ղրկուած է ամերիկաբնակ կարգ մը Այնթապցիներու, մեծ մասամբ իր նախկին սաներուն. յուսալի է որ այդ դիմումը կ'ունենայ իր բարերար արդիւնքը եւ Այնթապցիք կը բերեն իրենց լայն աջակցութիւնը «**Այնթապի Որբանոց**»ին :

## ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ՝ ՈՐԲԱՆՈՑԻ ՄԷՋ

*Որբանոցիս որբերուն ստուար մեծամասնութիւնը Լուսաւորչական է. կան Հայ-Բողոքական և Հայ-Կաթոլիկ որբեր եւս։ Դաւանական տեսակէտով ոչ մէկ խտրութիւն կը դրուի որբերու միջև։ Որբանոցիս Կրօնքի դասն ալ իրականին մէջ Ս. Գրքի և բարոյագիտութեան դաս մըն է։ Որբերուն չի թոյլատրուիր որ եկեղեցի կամ ժողովարան երթալու համար Որբանոցէ դուրս ելլեն. ամէն Կիրակի Տնօրէնութեան առաջնորդութեամբ պարզ ժամերգութիւն մը կը կատարուի Որբանոցի մէջ և բարոյական ու կրթական նիւթերու շուրջ խրատականներ կը խօսուին։ Տարին մի քանի անգամ, մեծ տօներու առթիւ, երեք յարանուանութեանց պետերն ալ կը հրաւիրուին որպէս զի խոստովանութեամբ, աղօթքով, պատարագով, հաղորդութեամբ գոհացնեն որբանոցիս որբերուն հոգեւոր պէտքերը։ Տարբեր ատեններ եւս հոգեւոր պետերը ազատօրէն կրնան այցելել Որբանոց և իրենց դաւանութեան պատկանող որբերու հոգեւոր կարիքը բառնալ։*

## ՀԱՆԴԷՍՆԵՐ

*Որբանոցը զանազան առիթներով կ'ունենայ իր հաւաքոյթներն ու հանդէսները։ Այդ շարքէն նշանակելի են անոնք որ տեղի կ'ունենան Նոր տարւոյ առթիւ և կրթական շրջաններու փակումին (Յունիսի մէջ)։ Հանդէսները լաւագոյն պատեհութիւնները կ'ընծայեն որբերուն, իրենք զիրենք շրջապատուած տեսնելու ամէն կողմէ հաւաքուած հայր-մայրերով, քոյր-եղբայրներով, և պահ մը մոռնալով իրենց որբութիւնը, շնչելու և ապրելու համար իսկապէս հայկական մթնոլորտի մը մէջ։ Դարձեալ, հանդէսները յարմարագոյն առիթը կ'ընծայեն որպէս զի որբասէր ազգակիցներ գան հետաքրքրուին իրենց անոքիկ որբերով, լսեն անոնց երգն ու խօսքը, տեսնեն անոնց գործն ու զարգացումը, վերջապէս. հոգ չէ թէ մի քանի ժամ, ապրին անոնց հետ ի քաջալերութիւն և ի խրախոյս այդ ապագայ սերունդին։*

*Ընդհանուր բնոյթ ունեցող յիշեալ հանդէսներէ զատ, Որբանոցը մերթ ընդ մերթ կ'ունենայ իր ներքին հաւաքոյթները,* Որբերու հանդէսները, *Վարդանանցի, Մայիս 28ի նման յիշատակելի*

*և պատմական օրերու կամ հարսնացումներու առթիւ, արտասանութիւններով, երգերով ու նուագով, պարերով կամ փոքրիկ ներկայացումներով։*

## 1922-1923 ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

1922-1923 *կրթական տարեշրջանին փակման հանդէսը տեղի ունեցաւ* 17 *Յունիս* 1923, *Կիրակի օր, զոր պատուած էին Պէյրութէ, Ճիւնիէյէ և շրջակայքէն* 400*է մօտ հրաւիրեալներ, Հայ, եւրոպացի և օտար* (*)։ *Որբանոցի սրահներուն անբաւարարութեան պատճառաւ, ինչպէս անցեալ տարի, այս տարի ալ հանդէսը կատարուեցաւ Որբանոցի մօտիկ ընդարձակ չէնքի մը մէջ։ Սրահը զարդարուած էր ոստերով, որբուհիներու ասեղնագործական արտադրութիւններով և որբերու ամենայաջող նկարներով* (**) (*շրջանակի մէջ և ապակեւոր*)։

*Հանդէսը, նախորդ տարիներու պէս ունեցաւ երկու բաժին.* արտասանական *և* երաժշտական: *Արտասանական բաժինը կը բաղկանար* 10 *արտասանութենէ* (3*ը Ֆրանսերէն*) *և երեք նորութիւն,* 2 *ինքնագիր շարադրութենէ* (*ընդհանուր մրցումի մը մէջ առաջնութիւն շահող երկու պարոններու կողմէ կարդացուած և արտասանուած*)։ *Երաժշտական բաժինն ալ ունեցաւ* երգչախումբի *և* նուագի *մասեր, առաջնորդութեամբ Պ. Յ. Իւզէջեանի և ընկերակցութեամբ դաշնակի։*

*Հանդէսը այս տարի ալ պահեց իր տոհմիկ բնոյթը և ուրախութեամբ պէտք նշանակենք որ իր փայլն ու յաջողութիւնը գերազանցեց նախընթացները։*

*Հանդէսին կարգացոյցը նոյնութեամբ կը դրուի տարև։*

*ԲԱՑՈՒՄ. (Երգչախումբ).* Յառա՜ջ Սանուկ. *(Բայլերգ Որբանոցի)*
*Նուագախումբ.* (4 ջութակ, 6 մանտօլին, 2 Ֆլիւթ)
*(Երգ եւ եղանակ)*
*Երգչախումբ.* Մեր Հայրենիք.

---

(*) Ն. Ս. Օծութիւնը՝ մասնաւոր կերպով հրաւիրուած, Հալէպէն հեռագրաւ կը յայտնէր իր խնդակցութիւնը եւ մասնակցութիւնը՝ հոգւով ու սրտով:

(**) Մասնաւոր յիշատակութեան արժանի են. = **Որսկանները, Լուսնի խաղը — Չերուպը, Հայաստանի փառքերէնը, Mignonը, Օգոստոսինը** (իւղաներկ) եւայլն:

*Արտասանութիւններ.* —

*ա.) Տնական խղճ* (Լուքճի Մինաս) *Օր. Մ. Կենճեան*
*բ.) Հայրենիքիս* ( * * * ) *Օր. Ե. Յակոբեան*
*գ.) Napoléon II.* (Victor Hugo) *Պ. Յ. Տէրտէրեան*
*դ.) Ինչո՞ւ եւ ինչպէ՞ս պիտի ապրինք* (թրգր.) *Պ. Վ. Տիտիզեան*
*ե.) Դարերու Վրէժ* (Սիամանթօ) *Պ. Ս. Տէր Յարութիւնեան*

*Երգչախումբ.* — Come to the Dance.

*Արտասանութիւններ.* —

*ա.) Սահմանը անցնողները* (Դ.Վարուժան) *Պ. Դ. Դալայճեան*
*բ.) Մայրենի եկեղեցին* (Սահակ-Մեսրոպ) *Օր. Ս. Մուրատեան*
*գ.) L'Onde et l'ombre* (Victor Hugo) *Պ. Խ. Սասունչեան*
*դ.) Փառք Յաղթուածներին* (Ա.Ահարոնեան) *Պ. Ս. Ողուրլեան*

*Երգչախումբ.* — Ի զէ՜ն, Հայե՛ր, ի սուր.

*Նուագախումբ.* (Եղանակ). —

*Արտասանութիւններ.* —

*ա.) Զուլումի Աշխարհը* (Մ. Ոսկեան) *Օր. Զ. Լեւոնեան*
*բ.) Le Triomphe de la Paix* (Fr. Passy) *Պ. Յ. Եագուպեան*
*գ.) Պայքա՛ր* (ինքնագիր տաղադր. ոտն.) *Պ. Ս. Տէր Յարութիւնեան*

*Երգչախումբ.* — Տօրօրա *(գեղջուկ պարերգ).*

*Տնօրէնին Տեղեկատուութիւնը.*

*Նուագ.* — Vals Idylle (ջութակ եւ դաշնակ) *Օր. Ա. Ա. Սարրաֆեան եւ Պ. Յ. Իւլքեզեան*

*La Marseillaise.* — *(Երգչախումբ):*

## ՈՐԲԱԽՆԱՄ ՄԱՍՆԱՃԻՒՂ.

*Վերջացող տարեշրջանի ամավերջի հանդէսը Որբանոցիս տարեգրութեանց մէջ պիտի մնայ կրկնակի նշանակելի թուական մը, ոչ միայն հանդէսին աննախընթաց յաջողութեամբը, այլ մանաւանդ իբրև հաստատութեան օրը Պէյրութի և շրջակայից* Որբախնամ Մասնաճիւղ*ին:*

*Որբանոցիս հանդէպ անկեղծ համակրութեան մը գոյութիւնը վաղո՜ւց զգալի էր. դժբախտաբար, կազմակերպութիւնն էր որ կը պակսէր: Տնօրէնութեան կողմէ Որբանոցի ուսումնական և աշխատանոցային կեանքին, ելեւմտական կացութեան,* Near East*ի հետ կայացուած հասկացողութեան և այլ նիւթերին աշխատանքներու շուրջ*

տրուած անղեկավարութիւնը, ի վերջոյ Որբանոցին և որբերուն կարգ մը կենսական պահանջքներուն թուումը, ամավերջի հանդէսին հմայքին հետ խառնուած, սակայն ընծայեցին որ գոյութիւն ունեցող համակրութիւնը գործնական բնոյթ ստանայ, դրականացուի։ Ներկաներէն Տօքթ. Օննիկ Կէրկէրեանի կողմէ յայտնուած առաջարկ մը, Որբախնամի Մասնաճիւղի մը կազմութեան (*) ծափահարելի առաջարկը, Պ. Մ. Գալըպեանի և այլոց կողմէ երկրորդուած ու հաստատուած, ընդհանուր հաւանութեան կ'արժանանայ և կը սաղմնաւորուի հանդէսին մէջ։ Ոմանք, դրամական ու գրենական նուիրատուութիւններով այժմ կուտան առաջարկին. իսկ, իբր 40 հոգի, տիկիններ և պարոններ, սիրայօժար կ'անդամագրուին կազմելի Մասնաճիւղին։

Ձեռնարկը հիմնաւորելու և կազմակերպութեան մը կարեւոր աջակցութեամբ, հանդէսին յաջորդող մի քանի օրերու ընթացքին առժամեայ վարչութիւն մը ծրագիրն ալ կ'իրականացուի և Տնօրէնութեան հրաւիրումով, Ազն. Տօքթ. Պ. Մելքոնեանի(**) պատուական նախագահութեան տակ, առժամեայ վարչութիւն մը անդամ կ'ըլլան Տեարք,

Օննիկ Մալլումեան
Միհրան Գալըպեան
Նշան Հազարապետեան
Վահան Վարդապետեան
Տօքթ. Օննիկ Կէրկէրեան

Առժամեայ վարչութիւնը գործի սկսած է արդէն և յուսալի է որ Պէյրութի Նորակազմ Մասնաճիւղը, նոր անդամակցութիւններով զօրացած, քիչ ատենի մէջ կ'ըլլայ Որբախնամի աջակից կարեւոր կեդրոն մը։

## ՈՐԲԱՆՈՑԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆԸ

### ՔՈՅՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆՑ ՀԵՏ

Լիբանան՝ տասնեակէ հայ որբերու ապաստանարան մը եղած է այժմ. Ճիպէյլէ Սայտա տասնեակ մը որբանոց ունի ան իր

---

(*) Իրականին մէջ՝ վերակազմութեան, քանի որ, 1919ին, Որբախնամի պատուիրակ Տիար Յ. Աղազարեանի եւ Հ. Ագասեանի ջանքերով կազմուած մասնաճիւղ մը գոյութիւն ունեցած էր նախապէս :

(**) Դիւանագիտական ներկայացուցիչ Ազգ. Պատուիրակութեան ;

գողին մէջ, մօտ 9000 որբերով։ Այնթապի Որբանոցը, ամենապզտիկներէն մէկը, ձգտած է միշտ մօտէն շփման մէջ գտնուիլ այդ քոյր հաստատութեանց հետ — ըլլա՛յ փոխադարձ այցելութիւններով և ըլլա՛յ հանդէսներու մասնակցութեամբ։ Եթէ պայմանները թոյլատու ըլլան, բնական է մեզ համար փափաքելի պիտի ըլլայ որ որբերն ալ շփման մէջ դրուին իրարու հետ, մարզական հանդէսներով, մրցումներով կամ պարզ այցելութեամբ։

## ՅԱՌԱՋԻԿԱՅ ՏԱՐԵՇՐՋԱՆԸ

Որբանոցի 1923-1924 տարեշրջանը կը սկսի յառաջիկայ Սեպտեմբերին։ Հինգերորդ դասարանը կրթական ծրագրով իրեն համար սահմանեալ շրջանը բոլորած ըլլալով, իբրև շրջանաւարտ, ըստ օրէնքի պիտի դուրս գայ Որբանոցէն։ (Մեզ համար փափաքելի պիտի ըլլար որ անոնք յառաջիկայ տարին ալ անցնէին Որբանոցի մէջ և աստիճան մ'ալ զարգանան եթէ ոչ իրենց ուսման, գէթ իրենց արհեստներուն մէջ. որպէս զի երբ Որբանոցէ մեկնին, կարենան իրենք զիրենք ապրեցնել և ուրիշին բեռ չըլլալ։ Համեստ ծրագիր մը՝ որ կը փայփայուի մեր կողմէն և որուն իրագործումը, սակայն, կապուած է արտաքին նպաստաւոր պայմաններու և մանաւանդ՝ նիւթական կարեւոր աջակցութեանց)։

* * *

## ՎԵՐՋԱԲԱՆ

Ահա՛ ամփոփ գծերու մէջ պատմութիւնը հաստատութեան մը՝ որ շատերու, նոյն իսկ օտարներու հաւաստումով տիպար է և օրինակելի՝ ամէն տեսակէտով։ Այնթապի Որբանոցը իբր 4 տարուան գոյութիւն ունի. իր հաստատութեան օրէն ասդին, անոր տիրական և առաջնորդող նպատակն եղած է խնամել, կրթել անօգնի որբ սերունդ մը և մարդ հասցնել — իրենց կոչումին, իրենց որբացման դերին գիտակից մարդեր՝ որոնք պիտի բերեն զիրենք կրթող, խնամող անձերու և հաստատութեան, զիրենք ծնող ազգին՝ որ այնքա՛ն յոյսեր ունի դրած իր վաղուան փառքը կերտելու կոչուած այդ մահապուրծ բեկորներու վրայ։

Թէ ի՛նչ կրցած է ընել Որբանոցս՝ այդ ուղղութեամբ, Որբանոցը այցելած, որբերը իրենց տան մէջ և իրենց գործերուն վրայ

*տեսած կարգ մը ականաւոր դէմքերու վկայութիւնները(*) տալ կուզէ ամէնէն արդարակշիռ դատումը պիտի ընծայէ առ այդ։*

*«Հաճոյք մը եղաւ մեզի այցելել այս Որբանոցը, ուր գոհունակութեամբ դիտեցինք աչքառու կարգ ու սարք և գնահատելի մաքրութիւն. դիտեցինք որ հոս որբերը՝ որբեր չէին, այլ կը վայելէին ծնողական գուրգուրանք և խնամք։ Կը մաղթենք որ ազգին այս յոյսերը պսակեն իրենց համար աշխատողներու զոհողութիւնները և կարենան դառնալ պատուական ու պատուաբեր հայ քաղաքացիներ»։*

22 Յունուար 1920 **Պօղոս Վ.րդ. Սարխ Մեսրոպ Վ.րդ. Թէքիճեան**
Այնթապ (Զմմառի Միաբանութենէն)

*«Ի Ճիւնիէ փոխադրուած Այնթապի Ազգ. Որբանոցը՝ ընդ խնամատարութեամբ Տիար Ղազարոս Ղպլիկեանի, այցելեցինք և գոհութեամբ տեսանք գուրգուրոտ խնամքները. թէև որբեր՝ բայց երջանիկ են և կը մաղթեմ միշտ երջանկութեամբ ապրին ընդհանուր ազգի սիրով և համակրութեամբ։ Օրհնեա՛լ Գահիրէի Որբախնամ Մարմինը, որ Նեղոսի հեռաւոր ափերէն Մալխասեանեան ցեղասիրութեամբ կը պահեն ու կը սատարեն որբերուն, որ ապագայ հայութիւնը պիտի կազմեն. օրհնեա՛լ և ամէն աշխատաւորք, որ սրտագին հոգւով կը խնամարկեն։»*

1920 Օգոս. 7, Ի Ճիւնիէ **Սահակ Կթ. Կիլիկիոյ**

*«Կը յանձնարարեմ բոլոր թերահաւատներուն այցելել Ճիւնիէ և տեսնել հոն թիւրքին ու արաբին ճիրաններէն ազատուած խումբ մը որբերու և որբուհիներու նախանձելի վիճակը. Որբանոցին Տնօրէնին ու մայրիկներուն շնորհիւ՝ եւրոպական որբանոցի մը հետ մրցող մաքրութիւնը. և այն ատեն, վստահ պիտի ըլլան թէ այս ազգը չպիտի փճանայ ու պիտի ապրի։ Կեցցե՛ն ազգին որբերը. կեցցե՛ն որբասէր հայերը։»*

7 Օգոս. 1920 **Օննիկ Մազլումեան**
Ճիւնիէ (Գորգի վաճառական, Պէյրութ)

*«Ազգային անբաւ կարօտութեանց դարմանումին ճամբուն վրայ, լաւագոյն մխիթարանքն է միշտ հանդիպիլ այսօրուան նորատունկ վաղուան պտղատու ծառ սիրելի որբուկներու։ Հոս զգացինք այդ մխիթարութեան մեծագոյնը. աչքառու են օրինակելի մաքրու-*

---

(*) Քաղուած՝ տպաւորութեանց տոմարէն :

*թիւնը, ճիշդ կարգապահութիւնը և առողջ զուարթ ու կայտառ ա-
ռողջութիւնը և առանց ամէնուն հետ՝ ազգասիրական նուիրական
զգացմունքներն...։»*

**Յակոբ Ծ. Վ. Նէսիմեան  Գարեգին Վ. Գասպարեան**

27 Ապրիլ 1920 Ճիւնիէ  (Աթ. Փոխանորդ Հայ. Կաթ. Հայոց Պէյրութի)  [(Այժմ՝ Փոխ-Վանահայր Զմմառու ուխտին)

"Le Frère directeur des Frères Maristes de Jounieh est heureux d'exprimer le plaisir qu'il a eu en visitant l'Etablissement des Orphelins, où il a admiré la bonne tenue des enfants et la discipline qui règne parmi eux...„

Jounieh, le 2 Janvier 1921  **Fr. J. Gaudence**
(Տնօրէն Ճիւնիէյի Գօլէճին)

"In behalf of the Near East Relief I wish to express our great appreciation of the work of our Sister Orphanage at Junieh... The need is great to save and to train a remnant of the Armenian people and it is a deare privilege to be able to join with devoted associates in this task, which is one of the geeatest opportunities for usefulness that God has ever given. Let us hope that the boys and girls of this institution will become noble citizens of Armenia.„

March 1, 1921.  **Bayard Dodge**
(Managing Director of N. E. R.
այժմ՝ Նախագահ Պէյրութի
Ամերիկեան համալսարանին)

"Very much pleased with what we saw and heard.„

April 25, 1921  **(Maj.) James H. Nicol**
(Acting Direcfor of N. E. R.)

*«Այցելեցի այս Որբանոցը և մեծ հաճոյքով տեսայ կարգ-կանոնը, մաքրութիւնը և սանիրուն առողջ երեւոյթը։ Կը շնորհաւորեմ Տնօրէն Տէր Ղ. Ղալիկեանը որուն մասին գովեստներ լսեցի Պէյրութի մէջ հեղինակաւոր անձերէ։»*

**Վ. Մ. Քիւրճեան**

Ապրիլ 25, 1921  (Փաստաբան. — Խմբագիր՝ Կոչնակի
եւ գործիչ Հ. Բ. Ը. Միութեան)

*«Որպէս թափառական տարագիր հայ մը Լիբանանի ապաստա-
կան օտար երկնքի տակ, այս Որբանոցի մէջ անցուցած շատ սուղ*

*վայրկեաններուս, հոգեկան մեծ սփոփանք մը կը գտնեմ և ամենաքաղցր յուզում մը կ'ըմբոշխնեմ, տեսնելով այս Որբանոցի մէջ բարոյական և մտաւորական գնահատելի ուղղութիւն մը, և տպաւորուելով այս մթնոլորտի մէջ թեւածող տոհմային անուշ շունչէն»:*

1921, Մայիս 16 **Ա. Մ. Ալէննեան**

(Խմբագիր «Տաւրոս»ի եւլն.

*«Այցելելով այսօր Որբախնամի հիմնած այս Որբանոցը, մեծ գոհունակութիւն ունեցանք տեսնելով հոն տիրող մաքրութիւնը, կարգապահութիւնը, տղոց առողջ ու զուարթ դէմքերը, բարեկիրթ ու վայելուչ նիստ ու կացը. ուրախ եղանք լսելով իրենց ազգասիրական եռանդով երգած երգերը և արտասանած բանաստեղծութիւնները: Կը շնորհաւորենք բազմաջան տնօրէնը, անձնուէր ուսուցիչներն և ուսուցչուհիները և Որբախնամի Վարչութիւնը:»*

Ճիւնիէ, 22 Մայիս 1921 **Արշակ Չօպանեան**

**Մ. Վրդ. Թէքէեան** Dr. MELCONIAN (Դիւան. Ներկայացուցիչ)

ՏԻԿԻՆ Օ. ՄԱՁԼՈՒՄԵԱՆ E. MELCONIAN

ՏԻԿԻՆ Ա. ՆԱՖԻԼԵԱՆ (ՏԻԿԻՆ ՏՔԹ. ՄԵԼՔՈՆԵԱՆ)

*«..... Կը գնահատենք Որբանոցին օրինակելի կարգապահութիւնը, որբերուն առողջական աչքառու վիճակը, բնակարանին տիպար մաքրութիւնը, սնունդի և զգեստի խնամեալ և գոհացուցիչ պայմանը և խիստ լաւ տպաւորութեանց տակ կը մեկնինք, օրհնելով բոլոր սրտանց այս Սուրբ յարկին և հաստատութեան բարերարները, անձնուէր տնօրէնութիւնը, ուսուցչական մարմինը և բոլոր գործակից մարմինը. յատկապէս կ'օրհնենք հայ ազգին զաւակները, որպէս զի աճին, զարգանան և գիտնան համապատասխանել իրենց համար եղած զոհողութիւններուն և հայ ազգին ապագայ կառուցուածքին:»*

Ճիւնիէ, 24 Մայիս 1921 **Յովհան Վրդ. Գուզեան**

(Եպիսկ. Կար. Հայոց Եգիպտոսի)

*«Կրօնական հոգեթով յուզումով և յարգալից պատկառանքով կը մանենք Ճիւնի գտնուող Եգիպտոսի Որբախնամին երկսեռ Որբանոցին սեմերէն ներս: Ես կը հաւատամ որ մարդագայլ Թուրքերու ճիրաններուն մէջ բզքտուած հայութեան զոհերը ամենափառաւոր մարտիրոսներ են և անոնց թողած որբերը՝ փարելի նշխարներ ու մասունքներ են: Այս ճշմարտութիւնը աւելի զրապէս կը շօշափէ այն ամէն ոք որ Ճիւնիի Որբանոցը կ'այցելէ: Այս պահուս, ես իմ մասիս փառաւոր մարտիրոսներու մասունքները կրող չքնաղ սրբատուփի*

*մը մէջ գտնուելու տպաւորութիւնը կը կրեմ։ Հոս տիրող կարգապահութիւնը, շէնշող զուարթութիւնը, որբերուն առողջ ու կայտառ երեւոյթը, վերջապէս բարոյական, նիւթական ու կրթական զարմանալի կարգ ու սարքը ինծի այս համոզումը կը ներշնչեն...։»*

24 Մայիս 1921, Ճիւնիէ — **Վարդան Վրդ. Խաչերեան**
(Զմմառի ուխտէն. — առաջնորդ՝ Գահիրէի)

*«Եղել եմ Կովկասում և Ատանայում բոլոր որբանոցների մէջ։ Սա ունի համարեա բոլոր բարեմասնութիւնները այդ լաւագոյն որբանոցներին։ Բայց չեմ տեսել նրանցից ոչ մէկում այդ տիպար մաքրութիւնը և ֆիզիքական կայտառութիւնը որբերին, որ փայլ է տալիս նրանց դէմքերին և պարուրում է իմ հոգին յոյզի և հըրճուանքի խորունկ յոյզերով.*

*... Հեռանում եմ այս Որբանոցից այն անվթար հաւատքով, որ ապագայ Հայաստանը այս խուլ անկիւնից ուժ է ստանալու, ուժ՝ անշէջ կենդանութեան և կենսագործ մեծութեան։»*

Դեկտ. 25, 1921 — **Բժ. Երուանդ Խաթանասեան**
(Պէյրութի Ֆաքիւլթէյէն)

*«Երկրորդ անգամ ըլլալով կ'այցելեմ Որբանոցիս. որբերու առողջութիւնը, հիւանդանոցի առանց հիւանդի մնալը, ամենամեծ երաշխիքը և վկայութիւնն է գուրգուրոտ խնամքի. հետեւաբար, կը մաղթեմ Որբախնամ Մարմնոյն ամէն յաջողութիւն. տնօրէնին և պաշտօնէից կարողութիւն և առատութիւն հայրական, մայրական ու քրոջական սիրոյ։»*

1922 Յունվար 22 — **Սահակ Բ. Կթ. Աւերակաց**

«... I found this orphanage a very nice and peaceful home and am glad to know some armenian children happy and safe here.»

March 6, 1922 — **Miss Petersen**
(Formerly of Mezereh. այժմ՝ Ճիպէյլի որբանոց)

«Ami de longue date des Arméniens, je suis heureux de joindre mon témoignage à ceux qui précedent. Je fais des vœux pour que prenne fin au plus vite le long et douloureux calvaire des Arméniens. Leur courage devant le malheur leur donne droit au bonheur.»

Le 6 Mars, 1922 — **Maurice Muret**
(Homme de Lettres; Membre correspondant de l'Inst. de France)

*«Այսօր, 19 Յունիս 1922, անակնկալ կերպով այցելելով Որբախնամ Ընկերութեան Ճիւնիէյի Որբանոցը, մէկ քանի օտարազգի բարեկամներու հետ պտըտեցանք անոր զանազան բաժինները եւ շատ գոհ մնացինք Որբանոցի բոլոր մասերուն մէջ տիրող մաքրութենէն, կանոնաւորութենէն եւ առողջապահիկ պայմաններէն։ Մեր ժամանակը չէր ներեր ուսումնական վիճակին վրայ ծանօթութիւններ առնելու, բայց տեսանք որ աշակերտները եւ աշակերտուհիները կատարելապէս առողջ, կայտառ եւ զուարթ երեւոյթ մը ունէին։ Աղջկանց ձեռագործի բաժնին մէջ տեսանք աշխատութիւններ որոնք ճաշակի եւ նրբութեան կողմէ պատիւ կը բերեն ո՛չ միայն Որբանոցի ուսուցչուհիներուն եւ սանուհիներուն, այլ ընդհանրապէս հայ իգական սեռին...։»*

**Միհրան Տամատեան**

*«Ամէն ինչ կանոնաւոր, կոկիկ եւ գոհացուցիչ այս տան մէջ»։*

1922 Դեկտ. 30, Շբ. ի Ճիւնիէ — **Բաբգէն Եպիսկոպոս**

*«Մօլ ցաւերու մէջ՝ կաթիլ մը մխիթարութիւն, պուտ մը սփոփանք, եթէ կ'ուզէք, ո՛վ հայութեան, մանաւանդ Կիլիկիոյ հայութեան վայրավատին բեկորներ. փութացէ՛ք ինծի պէս գէթ քառորդ ժամ մ'այցելելու Ճիւնի հաստատուած Հայկ. Որբանոցը, որ կտրիճ սէգ Այնթապի ծոցէն ակամայ եկած ապաստանած է Լիբանանեան սարերու ստորոտը, Տնօրէնութեամբ Տիար Գ. Ղպլիկեանի։ ....Իրօք, հեռուէն հեռու լսեր էի թէ այս մօտաւոր կեդրոններու որբանոցներէն ամենէն կատարեալն ու տիպարն էր այդ Որբանոցը. եւ սակայն, միշտ վերապահութեամբ լսեր ու մտքիս մէջ պահեր էի այդ գովեստները։ Ու այսօր, երբ երջանկութիւնը կ'ունենամ անձամբ այս նուիրական հաստատութիւնն այցելելու, ուրախ եւ հպարտ կ'զգամ հայու, Կիլիկիոյ զաղթական հայ վարդապետի սիրտս, որ տեսածս՝ լսածէս շատ աւելի է։»*

17 Ապրիլ 1923 — **Գրիգոր Վրդ. Մանուշեան**
Ճիւնի — (Զմմառի Միաբանութենէն)

*«Այցելեցի այս գեղեցիկ վայրի մէջ զետեղուած Որբանոցը եւ գտայ ամէն ինչ կանոնաւոր դրութեան մէջ. երեխաները դաստիարակւում են ազգային առողջ ուղղութեամբ։»*

7 Յունիս 1923 — **Բժ. Համ. Օհանջանեան**
(Հ. Հ. նախկին Վարչապետ)

*«Որբանոցի թէ ներքին եւ թէ արտաքին կարգ ու սարքը միանգամայն գոհացուցիչ էր. որբերի եւ պաշտօնեաների ազգային զգացումը վեր է ամէն քննադատութենէ։»*

7 Յունիս 1923 — **Երուանդ Հայրապետեան**
(Ուղեկից-ընկեր՝ Բժ. Օհանջանեանի)